## ՆՈՐ ՏԱՐՎԱ ՁՅՈՒՆԸ

Նոր տարվա ձյո՜ւնը,
Նոր տարվա ձյո՜ւնը—
Մի ճերմա՜կ-ճերմա՜կ
Ուրախություն է,
Պապիկիս համար՝
Ծով բերքի հույս է,
Տատիկիս համար՝
Հուշերի լույս է,
Հայրիկիս համար՝
Տքնություն, հոգսեր,
Մայրիկիս համար՝
Քնքշանք է ու սեր:
Իսկ ինձ համար էլ՝
Խաղ, դպրոց ու տուն
Եվ մի նոր գրված
Բանաստեղծություն:

ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

## ՆՈՐ ՏԱՐԻՆ

Ծերությունը թոթափելով
Եվ նորից-նոր մանկանալով՝
Գալիս է Նոր տարին,
Իր առջևն է նայում նա մերթ,
Մերթ էլ տխուր նայում է ետ՝
Անցած ճանապարհին:

Մերթ կարմրում է ամոթից,
Մերթ հեռավոր մի կարոտից
Արձակում է հառաչ,
Մերթ արցունք է աչքից կախվում,
Բայց նա իսկույն հույսով վառվում
Եվ նայում է առաջ:

Իսկ առջևում նոր հեռուներ,
Նոր երազի բույրե՜ր, գույնե՜ր,
Արև ու ձնծաղիկ...
Եվ Նոր տարին գալիս այսպես
Ու գիրկն առած տանում է մեզ
Դեպի չքնա՜ղ գալիք:



# ԵՂԵՎՆԻՆ

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

Նոր տարին ուշանում էր, կամ գուցե չէր ուշանում: Պարզապես ես և Սոսը, որն իմ ամենամոտ ընկերն է, շատ էինք շտապում: Մի օր էլ դպրոցի ճանապարհին՝ փողոցի անկյունում կանգնեց մի բեռնատար. եղևնիներ էին վաճառում: Նոր տարին բոլորովին մոտ թվաց:

— Վազենք տուն, փող վերցնենք ու գանք եղևնի գնենք,— ասացի ես:

— Է՜հ, Վահի՛կ, դեռ այնքա՜ն ժամանակ կա ,— ասաց Սոսը,— և հետո մինչև գնանք գանք, դասից կուշանանք:

Դրանից հետո փողոցի անկյունում այլևս եղևնիներ չերևացին: Եղևնիներ երևացին ուրիշ փողոցներում, անցորդների ձեռքերին, պատշգամբներում: Մեր դասարանում ովքեր եղևնիներ էին ուզում ունենալ, ունեցան: Միայն ես ու Սոսը եղևնի չունեինք: Առանց եղևնու ի՞նչ Նոր տարի: Դպրոցում լարված օրեր էին: Գրում էինք քառորդի վերջին ստուգողական աշխատանքները: Հետո քառորդային թվանշանները ամփոփեցին և դպրոց գնալը դարձավ հեշտ ու հաճելի: Դասերից հետո ես գալիս էի տուն, մանկապարտեզից բերում էի Սիրուշիկին և երկուսով սկսում էինք սպասել, որ հայրիկը կգա ու եղևնի կբերի: Երբ հայրիկը այնքան էր մոտենում շենքին, որ Սիրուշիկը համոզվում էր, թե դա հայրիկն է, պատշգամբից վազում էր սենյակ.

— Էլի եղևնի չի բերել:

— Մինչև հերթը ինձ հասավ, սպառվեց,— ձեռքերն էր տարածում հայրիկը:

— Վաղը գնա կայարա՛ն,— խորհուրդ էի տալիս ես,— մեր դասարանի Եղիշիկի համար կայարանից են գնել:

— Կգնամ,— խոստանում էր հայրիկը,— իհարկե, քեզ համար չէ, դու արդեն մեծ տղա ես, Սիրուշիկի համար:

Օրերն անցնում էին, բայց հայրիկը ո՛չ ինձ, ո՛չ էլ Սիրուշիկի համար եղևնի չէր գտնում: Դպրոցում սովորելու նոր դասեր չէին հանձնարարում և մի տեսակ տարօրինակ էր: Տանը ես նստում էի պատուհանի մոտ, նայում փողոցի կիսախավարում վառվող լույսերին ու երևակայում. ա՛յ, երկու օրից Նոր տարին կգա, մի տարով էլ կմեծանամ, կդառնամ այնքան բարձրահասակ, որ ֆիզկուլտուրայի դասին կկանգնեմ շարքի առջևում, կլինեմ խելոք ու սրամիտ:

Հին տարվա վերջին օրն էր:

Սիրուշիկը եկավ Նունեենց տնից և քիչ էր մնում լաց լինի.

— Այնքան մեծ տոնածառ ունեի՜ն:

Հայրիկը արդեն տանն էր: Եղևնի չէր գտել ու հիմա առանձնասենյակում նստած աշխատում էր, կարծես սովորական օր լիներ: Դռան զանգը հնչեց: Դռների մեջ կանգնել էր Համմիկ մորաքույրը, ձեռնոցով եղևնու բնից բռնած:

— Եղևնի՜,— բացականչեց Սիրուշիկն ու սկսեց թռչկոտել:

Մորաքույր Համմիկը ուսանողական պայուսակը ուսին կանգնել ու ժպտում էր:

— Որտեղի՞ց գտար,— հարցրեց մայրիկը:

— Ամբողջ քաղաքում փնտրեցի չկար,— զարմացավ հայրիկը:

Երբ ես եղևնին միջանցքից սենյակ տարա, պարզվեց, որ դա ոչ թե մի եղևնի էր, այլ երկուսը՝ երկու սակավաճյուղ եղևնիներ, որոնք միանալով դարձել էին կանաչ ու գեղեցիկ:

— Կկապենք միմյանց,— ասաց մայրիկը:

— Մայրի՛կ, խաղալիքնե՛ր բեր,— չէր համբերում Սիրուշիկը:

Ինչ լա՜վ է. Նոր տարին կսկսվի ուրախ ու տոնական, ես մի տարով էլ կմեծանամ, կդառնամ խելոք ու սրամիտ, դասարանում բոլորը ինձ կսիրեն, հայրիկը կգնի խոստացած հեծանիվը: Բայց Սոսին հիշելով, ես ինձ վատ զգացի, կարծես ինչ- որ բանով մեղավոր էի: Մի տոնածառը, իհարկե, փոքր կլիներ ու երևի անշուք:

— Մեկը տանք Սոսին,— խնդրեցի ես:

— Չէ՛,— գոռաց Սիրուշիկը,— դու արդեն մեծ ես, սա իմ տոնածառն է, չեմ տալիս:

— Դրա ձայնը մի՛ հանի,— ասաց մայրիկը:

Մորաքույր Հասմիկը ուսերը թոթվեց: Նա ամբողջ օրը բան ու գործ թողած՝ մեզ համար եղևնի էր փնտրել: Իսկ հայրիկը ժպտաց Սիրուշիկին ու գրկեց նրա ուսը.

— Մենք տոնածառը կզարդարենք, մինչև Վահիկը կվերադառնա, լա՞վ:

Ես ուրախացած վազեցի կախիչի մոտ:

— Չե՞ս մրսի,— հարցրեց մորաքույր Հասմիկը:

— Իմ վերարկուն տաք է:

Երկու եղևնիներն էլ ճիշտ իրար նման էին: Ես վերցրեցի նրանցից մեկը:

— Սա չէ՛, մյո՛ւսը վերցրու,— ասաց Սիրուշիկը:

— Լավ:

Վերցրեցի մյուսը:

— Չէ՛, դա ավելի լավն է,— ասաց Սիրուշիկը,— մյո՛ւսը տար:

Իսկ եղևնիները ճիշտ իրար նման էին:

Փողոցում մթնշաղ էր: Մարդիկ, մեքենաները, լույսերը ուրախ ու տոնական տեսք ունեին: Ա՛յ թե կզարմանա ու կուրախանա Սոսը: Հիմա երևի տխուր նստել է ու մտքով չի անցնում, որ ես գնում եմ իրենց տուն:

— Տղա՛ս, եղևնին որտեղի՞ց գնեցիր,— հարցրեց մի տատիկ:

— Մորաքույրս է գնել:

— Տո՞ւն ես տանում, հա՞,— տատիկը ժպտաց,— թող ուրախ Նոր տարի լինի, տղա՛ ջան:

Շտապող անցորդների կողքով ես վազեցի Սոսենց տան կողմը: Մեղմ ձյուն էր մաղում: Մի քանի ժամ հետո Նոր տարի էր:

# ՏԻԿՆԻԿԱՅԻՆ

Հին հույների կյանքում թատերական տիկնիկը իր հաստատուն տեղն է ունեցել: Հնագիտական պեղումների ժամանակ գտնվել են բազմաթիվ տիկնիկներ, որոնք, հավանաբար, մասնակցել են ներկայացումներին: Տիկնիկային թատրոնի մեծ ժողովրդականություն վայելելու մասին գրում են պատմիչներ Հերոդոտը, Արիստոտելը, Քսենոֆոնը:

Այդ է վկայում նաև Հուլիոս Կեսարի մի հատուկ հրամանը, որով նա արգելում էր տիկնիկներին խոսել, թույլատրելով օգտվել միայն շարժումներից (պանտոմիմա):

Հետագայում հետաքրքրությունը տիկնիկային թատրոնի նկատմամբ մեծացավ: Վաղ միջնադարի սկզբում Արևմտյան Եվրոպայի երկրներում տիկնիկային թատրոնը կատաղի հալածանքների էր ենթարկվում եկեղեցու կողմից: Տիկնիկները համարվում էին դժոխքի ծնունդ:

Ինկվիզիցիայի խարույկների վրա շատ տիկնիկների ու տիկնիկավարների այրեցին: «Խաչակրաց արշավանք»-ի պես մի բան էր սկսվել տիկնիկների դեմ: 12-րդ դարում փարիզյան մի տիկնիկավար՝ Բիոշեն, որը իր արվեստը ցուցադրելու համար շրջագայության էր մեկնել Շվեյցարիա, բանտարկվեց, մեղադրվելով կախարդանքի մեջ, որովհետև «ստիպում էր փոքրիկ արարածներին խոսել, վիճել, շարժվել: Իսկ այդպիսի փոքրիկ արարածները կարող էին միայն սատանաներ լինել»:

Ուշ միջնադարում եղել են դեպքեր, երբ դրամատիկ թատրոնի դերասանները ապստամբել են տիկնիկային թատրոնների դերասանների դեմ, որովհետև

## ՃԵՐՄԱԿ ՓԱԹԻԼՆԵՐ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Իջնում են դանդաղ փաթիլներն արծաթ,
Գրկում են իրար, ժպտում, ծիծաղում,
Ու երբ նստում են ճյուղերի վրա,
Ասես ճյուղերից աստղեր են կախվում:

Հրճվանք է իջնում ձյունի հետ մեկտեղ,
Բակում ցնծում են մանուկներն այնպե՜ս:
Ճերմա՛կ փաթիլներ, իջե՛ք ամեն տեղ,
Չէ՞ որ տխուր է ձմեռն առանց ձեզ:

ժողովուրդը նախընտրում էր տիկնիկային ներկայացումները:

Տարբեր երկրներում տիկնիկային թատրոնը ունեցել է իր ազգային ավանդույթները: Ճապոնական թատերական տիկնիկը նման չէ ոչ մի ուրիշ երկրի տիկնիկի: Այն ո՛չ թելերի միջոցով է շարժվում և ո՛չ էլ հնարավոր է հագցնել ձեռքին: Այդ խաղատիկնիկները մարդու հասակի երեք քառորդն են կազմում, ճենապակյա անշարժ դեմք ունեն և շքեղ արդուզարդ: Մի տիկնիկը վարում են սև հագած երեք դերասան, առանց հանդիսատեսից թաքնվելու:

Չինական տիկնիկային թատրոնը նույնպես ունի հին պատմություն և հարուստ խաղացանկ՝ երկու հազարից ավելի դասական պիեսներ:

Եվրոպական երկրները ունեցել են տիկնիկային թատրոնի իրենց հերոսները՝ Անգլիայում Պոնչն էր, Իտալիայում՝ Պուլչինելլոն, Ֆրանսիայում՝ Պոլիշինելը: Ռուսական հերոսը բարի ու սրամիտ Պետրուշկան է: Արևելքի երկրներում շատ տարածված են Կարագյոզի մասին պատմությունները: Պատմությունը հիշատակում է նաև հայկական Կարապետ անունով տիկնիկի մասին: Այս բոլոր տիկնիկներն էլ մարմնավորում են իրենց ստեղծող ժողովրդի հումորը, բարությունը, ազնվությունը:

Տիկնիկային թատրոնի խաղացանկում շատ են դասական ստեղծագործությունները: Շեքսպիրի «Հուլիոս Կեսարը» Գլոբուս թատրոնում բեմադրվելուց առաջ, ներկայացվել է տիկնիկային թատրոնի բեմում: Երեք հարյուր տարի շարունակ Շեքսպիրի ստեղծագործությունները՝ «Մակբեթը», «Վինձորի զվարճասեր կանայք», «Ամառային գիշերվա երազը», «Ձմեռային հեքիաթը» չեն իջնում աշխարհի շատ երկրների տիկնիկային թատրոնների բեմերից:

Տիկնիկային թատրոնի համար հինգ օպերա է գրել Հայդնը: Տոնավաճառի տիկնիկային «Ֆաուստ» ներկայացումը Գյոթեին ոգեշնչել է գրելու իր համանուն հանճարեղ ողբերգությունը:

20-րդ դարում տիկնիկային արվեստը բուռն վերելք ապրեց: 1929 թվականից գործում է տիկնիկավարների միջազգային կազմակերպությունը՝ ՈՒՆԻՄԱ-ն, որի կանոնադրությունը սկսվում է այսպես. «ՈՒՆԻՄԱ-ի կազմի մեջ են մտնում բոլոր երկրների տիկնիկավարները, որոնք տիկնիկային թատրոնը համարում են երեխաների և մեծահասակների սրտից ժողովուրդների սիրտը ձգվող արվեստ: ՈՒՆԻՄԱ-ի անդամները ձգտում են իրենց արվեստով ծառայել խաղաղությանը ամբողջ աշխարհում»:



## ՊԱՎԼՈՍ ԲՈՐՈՅԱՆ

*Նա միշտ երեխաների հետ է, երեխաներով շրջապատված: Երբ շուրջը նրանք ծիծաղում են, աղմկում, մոռանում է, որ ինքը մանկություն չունեցավ:*

*Գաղթի ճանապարհին մայրը իննամյա որդուն տվեց մի արաբի: Թող գոնե նա փրկվի: Մայրը մահացավ, իսկ տղան ապրում էր արաբի տանը և նրա որդիների հետ գառներ էր արածեցնում: Բայց թուրքերը այստեղ էլ գտան նրան և 1915 թվականի գարնանային մի երեկո պարկի մեջ գցած տարան: Երբ փոքրիկ տղան աչքերը բացեց, շուրջը իր նման երեխաների դիակներ էին: Մեջքի վերքը, որ հասցրել էին նրան առևանգողները, ցավում էր: Նա քնեց: Մյուս առավոտյան, երբ բացեց աչքերը, վրան կռացած մարդիկ տեսավ: Ուժասպառ եղած մի ծերունի չկարողանալով այլևս քայլել, գնացողներին խնդրեց, որ տղային էլ վերցնեն իրենց հետ: Գնացողները համագյուղացիներ էին՝ Տիգրանակերտի շրջանի Սևերեկ գյուղից: Նրանք ճանաչեցին Պողոս Բորոյանին: Տիգրանակերտցի հայ ընտանիքի հետ Պողոս Բորոյանը կտրեց արաբական անապատները, անցավ գաղթի երկար ու դժվարին ճանապարհներով:*

*Այնուհետև նա տարիներ շարունակ դրամատիկ թատրոնի դերասան էր սփյուռքում՝ Լիբանանում, Սիրիայում, Կիպրոսում: Հետո վերադարձավ հայրենիք, աշխատեց Սունդուկյանի անվան և Պատանի հանդիսատեսի թատրոններում: Նա երազում էր Համ-*

## ՆՈՐ ՏԱՐՎԱ ՄԱՂԹԱՆՔ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Արի՛, Նո՛ր տարի,
Թանկագի՛ն մեր հյուր,
Բաց են քո դիմաց
Դռներն ամենուր:
Սիրով մի խորին
Մտի՛ր ամեն տուն
Ու բե՛ր բոլորին
Նոր երջանկություն:

Պահի՛ր, պահպանի՛ր
Մեր տունն ու այգին
Եվ գանձերը մեր
Նորաստեղծ ու հին՝
Մեր քաղաքները,
Մագաղաթները,
Շատրվանները
Մեր արևային:

Արի՛, Նո՛ր տարի,
Մեր լա՛վ բարեկամ,
Բե՛ր բարիքների
Բարիքն ամենայն՝
Խաղաղությո՛ւն բեր,
Խաղաղությո՛ւն բեր,
Խաղաղությո՛ւն բեր
Աշխարհին համայն:

## ՓՈՐՁԱՆՔ՝

Բ. ԹՈՎԻԿ

Ապրում էինք Ղարանլուղի շրջանի (այժմ՝ Մարտունի) Վ. Ղարանլուղ գյուղում: Ծանր օրեր էին: Տանտիրոջ կողմից ձրիաբար մեզ հատկացված խարխուլ բնակարանը դեկտեմբերի թրատող ցրտերին դժվարանում էինք տաքացնել: Օրը մի քանի աթար էինք վառում և ծվարում քուրսու շուրջը:

Ամսի 20-ի մոտերքը իրենց հնոտիները ալյուրով ու կարտոֆիլով փոխանակելու համար մեզ հյուր եկավ իմ դպրոցական ընկեր Մնոն: Մեծ եղեռնից անցել էր չորս տարուց ավելի, սակայն գաղթից հետո մենք նոր էինք հանդիպում իրար: Կարոտով հիշեցինք Վարագա վանքի մեր դպրոցը, գլգլան աղբյուրներն ու խոշորատերև ծառերի վրա իջնող ցողաթաթախ մանանան, սերտարանի ծովահայաց լուսամուտներից երևացող այգիների մեջ կորած Վան քաղաքն ու կապո՜ւյտ-կապո՜ւյտ ծովի մեջ նստած կղզիները՝ Ախթամար, Լիմ, Կտուց, Առտեր...

— Բա տառե՜խը, տառե՜խը,— թուքը կուլ տալով հիշեցրեց Մնոն:

Հիշեցինք անցած-գնացած օրերը, մայիսի 1-ը, Շահբագի գյուղում ունեցած դպրոցական այգու խաղողօրհնեքը, Նոր տարվա հանդեսները, և որտեղից-որտեղ՝ հանկարծ խելքներիս փչեց այդ հանդեսների պատրանքն ստեղծող տոնածառ կազմակերպել:

Տոնածա՞ռ: Ի՞նչ ունեինք որ... հայրենի տնից զրկված, թափառական մարդկանց համար տոնածա՞ռն էր պակաս: Անցած չորս տարիների ընթացքում մեզ նման թափառականներից ո՞վ էր տոնածառի մասին մտածել: Շատ-շատ՝ կաղամբի թփով պասուց տոլմա, մի քիչ կարտոֆիլ, գարի բոքոն՝

լետ խաղալ, Օթելլո, Արքա Լիր... Հետո հրապուրվեց տիկնիկներով ու անմնացորդ նրանց նվիրվեց:

«Յուրաքանչյուր մարդ կյանքում իր տեղն ունի՝ միակը: Ես զգացի, որ իմ կոչումը այս է»:

ՀՍՍՀ վաստակավոր արտիստ Պավլոս Բորոյանը մեկն է նրանցից, ում ջանքերով հիմնադրվեց Հայաստանում առաջին տիկնիկային թատրոնը: 1935 թվականին էր: Առաջին ներկայացումն էր «Շունն ու կատուն»: Նրա կախարդ ձեռքերով փոքրիկ տիկնիկները կենդանանում ու զրուցում էին մանուկների հետ: Որքան հրճվանք և ուրախություն է պատճառել նա իր փոքրիկ հանդիսականներին: Հիմա էլ նա ամբողջ օրը երեխաների հետ է, չնայած անցել է կենսաթոշակի: Արդեն տասնհինգ տարի է ընկեր Պավլոսը տիկնիկավարություն է սովորեցնում շատ ու շատ երեխաների: Եթե երբևէ գնաք Երևանի Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներների պալատը և առաջին հարկում խմբված երեխաներ տեսնեք, ուրեմն պատանի տիկնիկավարների խմբակի պարապմունքն է: Երեխաներով շրջապատված կտեսնեք ձեր բոլորին ծանոթ ու սիրելի ընկեր Պավլոսին՝ արդեն ճերմակած մազերով, բայց միշտ աշխույժ ու երիտասարդ:

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

# ՆՈՐ ՏԱՐՎԱ ՃԵՄԻՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ահա մեր եղած-չեղած «տոնածառի» ողջ բերքն ու բարիքն ու հանդեսը: Բայց խենթուկ պատանիներ էինք ու որոշեցինք անպայման ունենալ մեր տոնածառը:

Տանտերը փլփլված մի թոնրատուն ուներ, որտեղ անպետք իրեր ու կոտրտված աման-չաման էր լցնում: Ցախավելի ճիպոտները միմյանցից անջատեցինք, հին փալասներով պնդացրինք ու վրան նկարեցինք Ձմեռ պապի դեմքը: Տանտիրուհին պուտուկի մեջ բամբակ ուներ պահած, դրանով էլ պատրաստեցինք Ձմեռ պապի բեղ-մորուքը, տանտիրոջ քուրքը գցեցինք ուսերին, փափախն ամրացրինք գլխին, և մեր Ձմեռ պապին արդեն պատրաստ էր:

Որոշել էինք Նոր տարուն մորս ու տան տերերի համար հաճելի անակնկալ պատրաստել: Դեկտեմբերի 31-ի ցերեկը դպրոցի հինգ աշակերտների հետ, որոնց պատվիրել էինք մեր գաղտնիքը ոչ ոքի չհայտնել՝ սկսեցինք գլխավոր փորձը: Տոնածառի կմախքի վրա բամբակ էինք շաղ տվել ու պատկերազարդ «Հասկերի» կտորտանքներ կապել: Թոնիրը խփիրով ծածկեցինք, ընդունակ աշակերտներից մեկը, ձեռքը դեպի «տոնածառը» պարզելով, նոր էր սկսել իր ելույթը՝

**«Ո՜վ եղևնի հսկա դու ծառ,**
**Կըսիրեմ քո գեղը դալար...»**

երբ հևալով ու փնչալով ներս մտավ տանտերը.

— Տո շա՜ն լակոտներ, ես եկեղեցու մեջ երեք ժամ ատամ-ատամի խփեմ, շան դող տամ, դառնամ սառցե սալոն, դուք քուրքս ու փափախս առած, մտնեք էստեղ, թատրոն խաղաք, հա՞:

— Վա՜յ, աչքե՜րս քոռանան, իմ բամբակն էլ են վերցրել, ա՜յ մարդ, տաս ֆունտ արդար յուղով եմ առել,— տանտիրոջ ետևից ներս մտավ տանտիրուհին ու խոյանալով Մնոյի վրա, զույգ ձեռքերով բամփեց գլխին: Մնոն մտավ սյան ետև, իսկ երեխաները ծլկեցին դուրս:

— Գիտե՞ս ինչ, քեռի՜ ջան,— փորձելով մեղմել տանտիրոջ բարկությունը, առաջ եկա ես,— Նոր տարի ենք սարքել, որ երեկոյան...

— Տո է՜ս քո քեռու, տո է՜ս քո Նոր տարու...— մռլտաց նա, քացիով ցրիվ տալով մեր տոնածառն ու Ձմեռ պապին: Այստեղ էլ տեսնելով ցախավելի ճիպոտները, նա աջ ձեռքը բռունցք դարձրած՝ խոյացավ վրաս: Բայց նույն րոպեին ես կռացա ու նրա հարվածը կորագծով անցավ գլխիս վրայով: Իներցիան առաջ մղեց նրան, ու խեղճը ոտքը խփիրի վրա հազիվ դրած՝ թըմփ, ընկավ թոնիրը:

— Վայ հողե՜մ գլուխդ, էս ի՞նչ արիր, մարդիս գլուխը կերար,— ծղրտաց կինը՝ սլանալով դեպի ամուսինը, բայց ես Մնոյի ձեռքից բռնած լեղապատառ դուրս էի թռել արդեն: Մնոն իր ունեցած-չունեցածն հսկույն հավաքեց ու փախավ Դիլիջան՝ փեսայի կողմը, իսկ մայրս կցկտուր պատմածիցս իմանալով եղելությունը՝ ինձ փախցրեց ուրիշ գյուղ՝ մորաքրոջս տղայի մոտ:

Ո՞վ կգուշակեր, որ այսպիսի տխուր վախճան պիտի ունենար մեր «Նոր տարին» ու հետը տաներ պիտի մեր տանտիրոջ երկու... առողջ ատամները:

Եթե կան ու դեռ կենդանի են մեր տխուր և աստանդական օրերի վկաները՝ տանտերն ու իր կինը, հույս ունեմ, որ նրանք վաղուց արդեն ներել են մեզ:





# ԼԵՆԻՆԻ ՏԱՂԱՎԱՐԸ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*Սուրեն Մուրադյանի «Լենինի տաղավարը» պոեմը «Սովետական ժողովրդի հեղափոխական մարտական, աշխատանքային ավանդները» թեմայով հայտարարված մանկական լավագույն ստեղծագործության համամիութենական մրցանակաբաշխությունում արժանացել է խրախուսական մրցանակի: Տպագրում ենք այդ պոեմը որոշ կրճատումներով:*

1

... Փնտրում էր Լենինին թշնամին նենգ,
Փնտրում էր նրան գիշեր-ցերեկ:
Ու փնտրում էին մինչ ամեն տեղ,
Լենինը Ռազլիվ հասավ արդեն:
Նա մոտ անտառից կտրեց ձողեր,
Շալակով բերեց ամուր ճյուղեր:
Հետո վերցրեց սուր գերանդին,
Խոտ հնձեց կանաչ մարգագետնից:
Պատրաստեց փոքրիկ մի տաղավար,
Որ ապահով էր ու շատ հարմար:
Ուներ թեյաման, սղոց, կացին,
Արթնանում էր վաղ լուսաբացին,
Փայտ էր սղոցում կամ խոտ հարում,
Եվ ձանձրալի չէր տաղավարում:
Բայց ամենից շատ գրում էր նա,
Սեղան որտեղի՞ց, կոճղի վրա:
Թեկուզ շատ շոգ էր, նա չէր նեղվում,
Ուռիներն էին ստվեր անում:
Ծիտիկներն էին անուշ երգում:
Ու ամռան հովն էր մեղմ շնկշնկում:
Եվ նա գրում էր լուռ, անդադար,
Գծում էր ուղին կովի արդար:

2

Մութն անտես իջավ պարզ լճակին.
Ո՞վ է մոտենում տաղավարին,
Մակույկը կանգնեց ափին կանաչ,
Փոստատարն է այդ պարտաճանաչ:
Ամեն երեկո Պետրոգրադից
Բերում է գրքեր ու ամսագիր,
Գաղտնի նամակներ ու թարմ թերթեր:
Մոտենում է նա և ժպտադեմ.
— Վլադիմի՛ր Իլյիչ, քիչ մնաց ձեզ
Չճանաչեի փոխված այդպես:
Ա՜յ թե հնձվոր եք, ո՜նց է սազում,
Այդ ինչքան լա՜վ եք հնձում, դիպչում:
— Է՜հ, բարեկա՛մս, ամեն ես քեզ,
Պիտի մարդ լինի հնձվորի պես,
Նրա պես լինի գործում ճարտար,
Նրա պես կյանքում՝ ազնիվ, արդար...

3

Երեխաները հնձվոր քեռուն
Մտերմացել են, ջուր են բերում
Կամ գերանդին են վերցնում ձեռից.
— Թող մի քիչ հնձենք, օգնենք, քեռի՛...—
Հաճախ էլ լճից ձուկ են որսում,
Հյուրասիրում են քեռուն, ասում.
— Համեղ ձկներ են, եփեք կերե՛ք:
— Շնորհակալ եմ ձեզանից ես,—
Ասում է քեռին ու խնայած
Թեյի շաքարն է տալիս նրանց:
Ռազլիվում մի լիճ կա, այդ լճից դեն
Տաղավարը հին կանգուն է դեռ.
Ու պահվում է այդ տաղավարում
Մի հին գերանդի, թեյաման սիրուն,
Կոճղ-սեղանին՝ գրքեր, թերթեր,
Սղոց ու կացին, փոքրիկ կաթսա...
Ինչ-որ պատմեցի՝ հեքիաթ չէ սա:

# ԳԱՐՆԱՆ ՀԱՆԴԵՍ

**«Երկրորդ կյանք» գրքից**

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

այիսի վերջին օրերն էին:

Պայծառ ու տաք մի առավոտ:

Ամբողջ Խառակոնիսը հավաքված էր Մեծ կամրջից այն կողմ, ընդարձակ մի դաշտում, որ չէր պատկանում ոչ ոքի, համարվում էր գյուղի ընդհանուր սեփականություն:

Այստեղ միայն գոմեշներ էին կռվեցնում:

Այդ օրն իրար հետ պիտի կռվեին Գմոյի Մարալն ու Խանձոյի Ֆարմանը:

Ռես Միրզայենց գյուղամերձ պարկոնի (պարկի) հողաշեն հաստ ու ցածլիկ պատերի վրա տեղ էին գրավել Խանձո Դավոյի Խաչոն՝ Ֆարմանի տերը, ուստա Կազարը, Պզկի Պողոսը, Վռան Վարդանը, Մկրտչի Սեփանը, իմ հայրը, Խանութի Մանվելը, ռես Միրզոն, ռես Աբելը, Տեր-Սահակը և մեր թաղի մյուս նշանավոր ու աննշան մարդիկ:

Մենք՝ երեխաներս պպզել էինք նրանց ոտքերի առաջ, որ լավ լսենք, թե մեծերն ինչ կարծիք են հայտնում կռվող գոմեշների մասին:

Մարալենց թաղի հանդիսատեսները ռես Պետրոսի և Տեր-Մարտիրոսի գլխավորությամբ տեղ էին գրավել մեզանից մի փոքր հեռու նույն հողե հաստ ու ցածլիկ պատի վրա:

Կանայք ու աղջիկները խռնվել էին պատի մյուս կողմը և մեծ մասամբ կանգնած էին ոտքի: Նրանք ամաչում էին տղամարդկանց ներկայությամբ նստել:

Վերջապես գյուղի դպիր Միրոն՝ կոճղի պես հաստ և ամուր մի խառակոնիսցի, բարակ ձայնով կանչեց.

— Հե՜յ... գեղացի՜ք... կնիկնե՜ր, ճի՜ժ, պի՜ժ... Մկա պիտի կռվեն ռես Պետրոսի Մարալն ու ռես Խաչոյի Ֆարմանը... հեռո՛ւ փախեք... ոտի տակ չընկնե՜ք...

Կռվի հրապարակում դեգերող հատուկենտ մարդիկ արագ հեռացան: Երևացին գյուղի կռվանները. Մարալը՝ Յովի կողմից, Ֆարմանը՝ գյուղամերձ պարտեզների կողմից: Մարալը՝ իր տիրոջ որդիների՝ Եղիշեի և Շավարշի ուղեկցությամբ, Ֆարմանը՝ Գևորգի և Հովոյի ուղեկցությամբ:

Գոմեշները հեռվից գլուխները բարձրացրին, նայեցին իրար և արձակեցին մարտական մռնչոցներ: Իմ սիրտը այնպե՛ս էր տրոփում, որ կարծես հիմա պիտի պայթեր:

— Շա՜տ ափսոս, որ Ֆարմանը պոլ է,— համակրանքով հառաչեց ուստա Կազարը:

— Իսկ էդ անիծված Գմոյի Մարալը տես ի՛նչ երկար, կեռ ու սուր կոտոշներ ունի,— ուստա Կազարի միտքը շարունակեց Վռան Վարդանը:— Կռվում է սիլլայով, կախ գցելով, շարափակ անելով ու էլ ես ինչ գիտեմ, թե ի՛նչ սատանայական հունարներով: Իսկ մեր Ֆարմանը միայն երկու ձև ունի կռվելու՝ խոռնակ տալ, բաֆրկել:

— Գոմշի կռվելու հունարը գալիս է կոտոշներից: Ո՛չ պոլ գոմեշն է շարափակ անում, ո՛չ էլ չանգալն է խոռնակ տալիս,— բացատրեց Պզկի Պողոսը՝ թաշկինակը սեղմելով ցավոտ աչքերին:

Ես գոմշակռիվ տեսել էի և ծանոթ էի նրանց կռվի այդ բոլոր ձևերին: Սիլլա, այսինքն՝ ապտակ տվող գոմեշը իր կեռ կոտոշների ծայրով քերքում է հակառակորդի ծոծրակն ու վիզը: Կախ գցելիս գոմեշը իր կեռ կոտոշի ծայրը խրում է հակառակորդի ականջի տակ կամ ուղղակի աչքը և նրան բարձրացնում է ետևի ոտքերին՝ երբեմն աչքը դուրս թափելով: Շարափակ անելիս գոմեշը հանկարծակի թողնում է հակառակորդի գլուխը և փորձում է նրա ետևի ոտքը բռնելով՝ նրան գետին տապալել: Խոռնակը գոմշակռվի ամենաազդեցիկ ձևերից մեկն է, երբ գոմեշը հեռվից գրոհում և իր գլուխը ահավոր ուժով զարկում է հակառակորդի գլխին:

Բաֆրկել նշանակում է հակառակորդի ուսատակն առնել գլխի վրա և նրան հրել հաճախ գետին գցելով: Իմ սիրտը ցավում էր նրա համար, որ Գմոյենց Մարալը կռվելու երեք ձև ունի, իսկ մեր Ֆարմանը՝ միայն երկու ձև:

— Իմ հույսը խոռնակի վրա է,— մտահոգ եղանակով ասաց ռես Խաչոն:— Ֆարմանը որ կարողանա սամթ գցել ու տալ երեք-չորս խոռնակ, ռես Պետրոսի կռվանը չի դիմանա:

— Հայ-հա՛յ, Ֆարմանի խոռնակին գոմեշ չէ, սա՜ր էլ չի դիմանա,— ոգևորվեց իմ հայրը:— Երկու տարի առաջ ես աչքով տեսա, ոնց Ֆարմանը մի խոռնակով քրդի գոմշի վիզը փորը մտցրեց ու գոմեշը տեղնուտեղը սատկեց:

Մարալն ու Ֆարմանը բավականին մեծ հեռավորության վրա սկսեցին իրար շուրջ պտտել: Տնտըղում էին իրար: Չափում էին իրենց ուժերը: Գոմեշներն ունեն այդպիսի սովորություն, կռվելուց առաջ իրար տնտղում են հեռվից, և եթե նրանցից մեկը բնազդաբար զգաց, որ հակառակորդը իրենից շատ է ուժեղ, գլուխ չի տալիս, փախչում է և գլուխն ազատում:

Գոմեշները դեռ հեռվից պտտվում էին իրար շուրջ, իսկ իմ սիրտը կուչ էր գալիս: Չլինի՞ հանկարծ Ֆարմանը Մարալից վախենա, գլուխ չտա, փախչի ու խայտառակի ամբողջ մեր թաղը: Դե արի՝ դրանից հետո դիմացիր Կազախի Վարդանի լեզվին... Դուք էլ ձեր թաղի գոմշի պես վախկոտ կնկլոզիկներ եք: Ֆարմա՛ն ջան, մեզ չխայտառակես...

Ֆարմանը կարծես կռահելով իմ երկյուղները՝ հանկարծ գլուխը ցած բերեց, կայծակի արագությամբ

Սկիզբը՝ 1971 թ. № 12

հարձակվեց և, դը՜մփ, հուժկու մի խոռնակ տվեց իր հակառակորդին՝ բաֆրկելով ահագին տեղ:

— Սկսվե՛ց կռիվը,— ձայն տվին մարդիկ երկու թաղից էլ միաժամանակ:

— Մեր Ֆարմանն սկսե՛ց,— գոռացին մեր թաղի երեխաները:

Եղիշեն, Շմավոնը՝ ռես Պետրոսի ավագ ու կըրտսեր որդիները, Գևորգն ու Հովոն՝ ռես Խաչոյի որդիները, չորսն էլ տոնական հագուստներով, հրապարակում վազվզում էին՝ հետևելով գոմեշների մենամարտին: Մեր թաղը բարձրացրեց հաղթական աղաղակներ, ռես Պետրոսի թաղը պահպանում էր առայժմ ընկճված լռություն: Մի րոպե թվաց, որ Ֆարմանն իր հուժկու խոռնակով կոտրել էր հակառակորդի դիմադրական կորովը և իր հաղթանակը ապահովել: Բայց այդպես թվաց միայն մի րոպե: Հաջորդ պահին Մարալը ճարպիկ մի շարժումով իր ուսն ազատեց հակառակորդի պռլ կոտոշներից, գլուխը դեմ արեց նրա գլխին և սկսեց իր սովորական սիլլակռիվը: Նրա կեռ սրածայր եղջյուրները հարվածում և քրքրում էին հակառակորդի ծոծրակն ու վիզը, իսկ Ֆարմանի պռլ կոտոշները շարժվում էին միայն օդի մեջ:

— Ջա՛ն, Մարա՛լ,— հրճվանքի ոռնոցներ բարձրացրեց Մարալի թաղը:

Մեր թաղը լռեց: Իմ սիրտը մղկտում էր ցավից և ամոթից:

— Կա՛խ գցեց,— մի քանի քայլ առաջանալով գոռաց Կազախի Վարդանը...— Հո՛ւյ, ես քո հոգո՜ւն մատաղ, Մարա՛լ:

Մարալն իր եղջյուրի ծայրը խրել էր Ֆարմանի ականջը և նրան բարձրացրել ետևի ոտքերին: Դա Մարալի սովորական կախն էր, որով նա երեք տարի առաջ ռես Հարոյենց կռվանի աչքը դուրս թափեց և նրանից խլեց առաջնության պատիվը: Սակայն դըժվար էր Ֆարմանին այդքան երկար պահել կախի վրա: Ֆարմանը Մարալից երիտասարդ էր, բայց մարմնով նրանից ավելի խոշոր: Մարալը կախը վերջացրեց և անցավ նորից սիլլամարտի:

— Խոռնա՛կ, Ֆարմա՛ն, խոռնա՛կ,— անզոր կատաղությունից ոռնում էր Հովիկը: Եվ ես նույնպես բղավեցի.— Խոռնաաա՜կ...

Բայց խոռնակ տալու համար Ֆարմանը պետք է իր գլուխը հեռացներ հակառակորդի հզոր կոտոշներից, ետ-ետ գնար, տարածություն վերցներ թափ առնելու համար: Իսկ խելոք ու փորձառու Մարալը արդեն զգացել էր խոռնակի կործանարար ուժը և հակառակորդին հնարավորություն չէր տալիս անցնելու կռվի այդ ահավոր ձևին:

Ֆարմանն, այնուամենայնիվ, ետ-ետ գնաց: Բայց Մարալն անմիջապես անցավ շարափակի, որով նա անցյալ տարի գետին փռեց ռես Միրզոյի Ջորային և երրորդ անգամ պահպանեց «Գեղի կռվան» կոչումը: Գոմեշներն սկսեցին կատաղի արագությամբ իրար շուրջ պտտվել: Նրանցից յուրաքանչյուրի խըն-

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ



դիրն էր վերցնել հակառակորդի հետևի ոտքը և նրան գետին տապալել: Դա հաղթանակի ամենավճռական պայմանն էր, բայց, իհարկե, դեռ ոչ հաղթանակը:

Մարալի թաղը ցնծությամբ գոռում-գոչյուն էր բարձրացրել, մեր թաղը սարսափով հետևում էր շարափակին: Ես այլևս չդիմացա, նետվեցի հրապարակը, որպեսզի ավելի մոտիկից տեսնեմ այդ ահավոր մենամարտը:

— Ո՞ւր ես վազում,— հետևիցս գոռաց հայրս,— կընկնես ոտքերի տակ:

— Չեմ ընկնի,— առարկություն չվերցնող եղանակով պատասխանեցի ես և մոտեցա շարափակի մեջ իրար շուրջ չարխի պես պտտվող գոմեշներին:

Ֆարմանն իր պոլ եղջյուրով հարվածում էր հակառակորդի ետևի ոտքին, բայց ոտքը վերցնել չէր կարողանում: Մարալին հոջողվեց Ֆարմանի ոտքը վերցնել և գետին գցել նրան: Նա իր գլուխը սեղմել էր հակառակորդի փորին և սրածայր եղջյուրներով քրքրում էր նրա մորթը: Ես տեսա, ինչպես արյուն էր ծորում Ֆարմանի փորատակից, և մազ մնաց վշտից ոռնայի: Գմոյի Մարալը կարծես իմ փորն էր պատառոտում: Հովոն մոտեցավ ինձ և իմ գլուխը շոյեց.

— Մի՛ վախենա, Հայե՛ր ջան: Մեր Ֆարմանին հաղթող գոմեշը չի ծնվել:

Ուստա Կազարը դիմեց Մարալի տիրոջը.

— Ռե՛ս Պետրոս, եկեք սրանց իրարից բաժանենք: Կտա փորը կպատռի: Ափսոս է Ֆարմանը:

— Բաժանենք,— իր թավ բեղերը հաղթական մի շարժումով սղալեց ռես-Պետրոսը:

— Չեմ թողնի,— ձեռքը խանչալին դրեց և բղավեց Հովոն:— Իմ Ֆարմանին հաղթող գոմեշը չի ծնվել:

Կարծես այդ խոսքերը հաստատելու համար Ֆարմանը վեր ցատկեց և իր ուսով ընկավ հակառակորդի գլխին: Մարալն սկսեց նրան բաֆրկել: Բաֆրիկ Խառակոնիսում կոչվում էր հաստաեզր կաշեպատ այն փայտե թիակը, որով ձյան կույտերը կտուրներից ներքև կամ բակերից փողոց էին հրում: Դրա համար գոմշակռվի այդ կերպը կոչվում էր բաֆրկել: Մարալը իր հակառակորդին ձյան ահագին կույտի պես բաֆրկում էր հրապարակի վրա այս ու այն ուղղությամբ: Ֆարմանը կարծես հաճույքով էր թույլ տալիս, որ իրեն բաֆրկեն, կարծես խաղ էր անում: Այժմ նրա աչքերն ավելի հանգիստ էին, քան այն ժամանակ, երբ նա ընկած էր գետին և հակառակորդը քերքրում էր նրա փորատակը:

— Ֆարմանը գտա՞վ Գմոյենց Մարալի ճաշը եփելու ձևը,— իմ ականջին փսփսաց Հովոն:— Միայն թե գետին չընկնի:

— Գետին չընկնե՛ս, Ֆարման ջա՛ն,— աղոթում էի ես իմ մտքում:— Չընկնես, չընկնես, չընկնես...

— Ռե՛ս Խաչո, ռե՛ս Պետրոս,—երկու կողմերին դիմեց ուստա Կազարը:— Եկեք, անասուններին բաժանենք իրարից: Ֆարմանը մեղք է, փախչել է ուզում, չի կարող:

— Հա՛, հա՛, բաժանենք,— ձայն տվին այս ու այն կողմից Պզկի Պողոսը, Վռան Վարդանը, Տեր-Մարտիրոսը և ուրիշ հեղինակավոր խառակոնիսցիներ:

— Բաժանենք,— նորից իր թավ բեղերը հաղթական շարժումով սղալեց ռես Պետրոսը:— Հե՛յ, տղե՛րք, չվաննե՛ր բերեք:

Խառակոնիսում, երբ որոշում էին կռվող գոմեշներին իրարից բաժանել, նրանց ետևի ոտքերից պարան էին կապում և մի քանի ուժեղ երիտասարդ քաշելով գոմեշներին հեռացնում էին իրարից: Երկու խումբ երիտասարդ պարաններով երկու կողմից մոտեցան:

— Մի՛ մոտենաք,— բղավեց Հովոն,— արո՛ւն կթափեմ:

— Ախր, Հովո՛ ջան,— խոսեց ռես Պետրոսի ավագ որդին՝ Եղիշեն...— Ափսոս է ձեր գոմեշը, լավ լծկան կդառնա: Ինչո՞ւ թողնենք, որ Մարալը նրան գետին գցի ու փորը թափի: Ես մեր Մարալին գիտեմ:

— Թող փորը թափի՛,— վիրավորանքից ու կատաղությունից բղավեց Հովոն:— Ես էլ իմ Ֆարմանի՛ն գիտեմ: Դու այս տարի քո Մարալին պիտի կոտես: Պիտի կոտես:

Ես մտքումս Հովոյի հետ համաձայն էի: Միայն ես ու Հովոն էինք հասկանում, թե ինչ է տեղի ունեցել: Ֆարմանը տեսնելով, որ սիլլայով, կախով ու շարափակով հակառակորդի հետ մրցել չի կարող, որոշել էր անցնել իր ահավոր խոռնակին: Բայց խոռնակի անցնելու համար պետք է հեռավորություն շահեր: Այդ հեռավորությունը նրան չէր տա կռիվների մեջ փորձված ու հմուտ Մարալը: Ուստի Ֆարմանը որոշել էր իր ծանր մարմնով ընկնել նրա գլխին և թույլ տալ, որ Մարալը իրեն բաֆրկի, բաֆրկի, բաֆրկի և հոգնի... Այո, Ֆարմանն այդպես էր մտածում իր գոմշային գլխով: Գոմեշների մասին այն կարծիքն է տարածված, որ նրանք բութ և անզգա անասուններ են: Եթե ուզում են ընդգծել մի մարդու բթությունն ու կոպտությունը, նրան գոմեշ են անվանում: Ինչպես, երբ մեկի ոտքերի անճոռնիությունն են ուզում շեշտել, ասում են՝ էշի ոտքեր ունի: Երկու անասունների նկատմամբ էլ անարդար են մարդիկ: Էշի ոտքերը նուրբ ու գեղեցիկ են: Գոմեշը խելոք է և զգայուն: Մանկությունս ու պատանեկությունս ես անց եմ կացրել գոմեշների մեջ: Երբեք չի պատահել, որ գոմեշը մարդու ոտ կոխի: Հենց որ զգում է իր ոտքի տակ մարդու փափուկ մարմին, ոտքը առանց հուպ տալու, վերցնում է ու դնում այն կողմ:

Գոմշացուլերը երբեմն հարու են տալիս: Բայց այդպիսի չար բնավորություններ պատահում են նաև մարդկանց մեջ: Իսկ Ֆարմանը հարու տվող չէր: Թույլ էր տալիս, որ մարդիկ իրեն մոտենան ու շոյեն չալ ճակատն ու հայելու պես փայլուն գավակը: Ես Ֆարմանի հետ մտերմացել էի: Հովոն էր նրան արածեցնում ու պատրաստում այս կռվի համար: Ես հաճախ ընկերանում էի Հովոյին, նրա հետ գնում էի արոտատեղ: Նա ինձ դնում էր Ֆարմանի փափուկ մեջքին, և եմ ինձ զգում էի յոթերորդ երկնքում: Ես պաշտում էի Ֆարմանին: Ֆարմանն ինձ համար ուժի և գեղեցկության աստված էր: Ես ու Հովոն մեկտեղ սիրում էինք Ֆարմանին, սիրում էինք նաև իրար: Հովոն հովանավորում էր ինձ և պաշտպանում կովարար մեծահասակ տղաներից:

Գոմեշներն իրարից բաժանողներն սպասում էին ռես Խաչոյի կարգադրությանը: Ռես Խաչոն մաքուր սափրած կզակը շոյեց ու ժպտաց.

— Հովակիմս որ չի ուզում, գոմեշներին մի՛ բաժանեք: Թող կռվեն: Ես էդ մի գոմեշն էլ մատաղ կանեմ Հովոյիս:

Բաժանելու պատրաստ երիտասարդները ուսները թոթվելով հրապարակից հեռացան:

Իսկ Մարալը շարունակում էր իր հսկա հակառակորդին բաֆրկել: Ես Հովոյի պոչից կպած հետևում

էի գոմեշների կռվին, չնայած հայրս և մյուս մեծահասակները ինձ անդադար ետ էին կանչում: Ես պարզ տեսնում էի, ինչպես Ֆարմանի աչքերը հանգիստ էին: Իսկ Մարալը հևում էր և նրա արնակալած աչքերը դուրս էին թռչում ակնախոռոչներից: Նա դուրս հանեց իր ահագին լեզուն: Ուրեմն արդեն ուժասպառ էր: Ֆարմանը բոլորից ավելի լավ էր զգում այդ և իր ուսն ազատեց հակառակորդի եղջյուրներից: Մարալը կանգ առավ: Ֆարմանը ետ-ետ գնաց:

— Փախա՜վ, փախա՜վ,— չարախնդաց, աղմկեց Մարալի թաղը:

— Խանձոյի կնկլոզիկ Ֆարմանը փախա՜վ,— ի հեճուկս ինձ՝ գոռաց Կազախի Վարդանը:

Երկու կողմից մարդիկ մտան գոմեշների արանքը: Մտածում էին, որ Ֆարմանը փախչում է և կռիվն ավարտվեց Մարալի հաղթանակով: Մարդիկ ուզում էին Ֆարմանին ազատել գոնե հետապնդումից: Բայց Մարալը անշարժ կանգնած էր:

— Փախե՜ք,— ձայն տվին այս ու այն կողմից:

Ֆարմանը բավական մեծ մի տարածություն ետ-ետ գնալուց հետո , հանկարծ գլուխը բարձրացրեց, մռնչաց և հողմի արագությամբ նետվեց հակառակորդի վրա, գը՛մմփ: Դա երկրորդ խոռնակն էր կռվի սկզբից: Ֆարմանը նորից ետ-ետ գնաց, այս անգամ ավելի շատ հեռացավ և նորից հարձակվեց, գը՛մմփ...

— Ջա՜ն,— բացականչեց Հովոն:

Ֆարմանն այդ կերպ իրար ետևից հասցրեց յոթ խոռնակ: Մարալը առանց ութերորդ խոռնակին սպասելու, փախավ:

Մեր թաղը հրճվանքի խելագար ոռնոց բարձրացրեց: Մարալի թաղը թաղվեց լուռ սգի մեջ: Իսկ Մարալը փախչում էր խելահեղ արագությամբ: Նույն արագությամբ նրան հետապնդում էր Ֆարմանը:

Գոմեշները սովորաբար դանդաղաշարժ են: Բայց երբ նրանք իրարից փախչում և հետապնդում են իրար, նրանց ետևից չի հասնի ոչ մի արաբական նժույգ: Ֆարմանը իր հսկայական պարարտ մարմինը փետուրի թեթևությամբ թռցնում էր, հասնում էր փախչող հակառակորդի ետևից, հարված էր հասցնում կողերին ու գավակին, բայց պոլ եղջյուրները չէին օգնում, որ նա նրա ետևի ոտքը վերցներ, գետին գցեր՝ իր վրեժը լուծելու համար: Ուստի չէր հագենում հակառակորդին հալածելուց: Այդ հալածանքը տևեց կեսօրվանից մինչև արևմուտք: Կտուրներին կանգնած, մենք տեսնում էինք, ինչպես կվրկի հանդում իրար ետևից արագությամբ սուրում են երկու սև կետ:

Վերջապես Մարալը փախավ դեպի գյուղ: Նախրատեղում գյուղացիներն ընկան երկու գոմեշների արանքը, Մարալն անհետացավ իր անողոք հետապնդողի տեսադաշտից: Ֆարմանը, որի վզին ու փոքրատակին չորացել էր արյունը, հաղթական մռնչոց արձակելով տուն վերադարձավ: Ռես Խաչոյի բակում մեր թաղեցիք նրան շրջապատեցին և սկսեցին իրար աչքալույս տալ:

— Աչքդ լո՛ւյս, ռե՛ս Խաչո: Քո Ֆարմանը դառավ գեղի կովան:

— Քո՛ աչքը լույս, մե՛ր աչքը լույս...

Իսկ Հովոն... Հովոն լարվածությունից և ուրախությունից ուշաթափվեց:



Մարինեի դիմանկարը



Կինտո



*Միսաք Մեծարենց*



# ԳԵՎՈՐԳ ԳՐԻԳՈՐՅԱՆ
## (ՋԻՈՏՏՈ)

### Ծննդյան 75-ամյակի առթիվ

Երևանի խաղաղ անկյուններից մեկում է ապրում անվանի նկարիչ Գևորգ Գրիգորյանը (Ջիոտտո): Օրվա տքնաջան աշխատանքից հետո, երբ դիտում է բակում խաղացող փոքր ու մեծ երեխաներին, նրանց անհոգ ու ուրախ դեմքերը, հիշում է հին Թիֆլիսը, իր դժվարին ու անուրախ մանկությունը: Փոքրիկ Գևորգը սիրում էր նկարել: Նա թուղթ ու մատիտ էր գտնում և իր տեսածն ու զգացածը անմիջականորեն հանձնում թղթին: Դրանք տարօրինակ դեմքերով մարդիկ էին, գույնզգույն շորերով, ուրախ ու տխուր, աշխույժ կինտոներ՝ սինիները գլխին: Անցան տարիներ: Գևորգը ընդունվեց Թիֆլիսի նկարչական դպրոցը և սկսեց սովորել հայ անվանի գեղանկարիչ Եղիշե Թադևոսյանի ղեկավարությամբ: Պատանի Գևորգը դեռևս վաղ շրջանում իր համարձակ որոնումների ճանապարհին ձեռք բերեց ինքնուրույն դեմք ու նկարելաձև: Նա նկարում էր շրջապատի ասեսաանիշան իրերն ու մարդկանց, իրենց տան աղքատիկ կահկարասիները և դրանց հաղորդում նկարչի իր հույզերն ու ապրումները: Եվ այդ անկենդան իրերը շնչավորվում, արվեստի լեզվով խոսում էին դիտողի հետ:

Թիֆլիսի նկարչական դպրոցն ավարտելուց հետո, նա ևս երկու տարի սովորում է Մոսկվայում, ապա վերադառնում Թիֆլիս և ստեղծագործում է նոր ուժով: 20—30-ական թթ. նա ստեղծում է «Նատյուրմորտ անձրոցիկով», «Նատյուրմորտ սկահակով», «Նվիրված առաջնորդի մահվան», «Ստեփան Շահումյան», «Մայրություն» հոյակապ գեղանկարչական գործերը: Աստիճանաբար, 40-ական թվականներից սկսած, նկարչի ներկապնակը հարստանում է նոր գույներով. ի հայտ են գալիս դեղինը, մանուշակագույնը, վարդագույնը: Նկարների մուգ գուներանգը իր տեղը զիջում է բաց լուսավոր գունահատվածներին: Գրիգորյանի ստեղծագործության մեջ գերիշխող է դառնում հայկական թեմատիկան՝ «Դավիթ և Խանդութ», «Խ. Աբովյան», «Շիրվանզադե», «Վ. Տերյան» և «Ե. Չարենց»:

Արդեն տասը տարի է, ինչ վաստակաշատ նկարիչը ապրում և ստեղծագործում է Երևանում: Այդ տարիներին նրա ստեղծագործությունը հարստացավ նոր թեմաներով, ձևերով և գույներով: «Նելլի», «Սոսյայի դիմանկարը», «Նատյուրմորտ ձկներով» և վերջին տարիների մյուս բազմաթիվ ստեղծագործությունները շնչում են կենսասիրությամբ ու պայծառ լավատեսությամբ: Թեև անվանի նկարիչը թևակոխել է իր ութերորդ տասնամյակը, շարունակում է ստեղծագործել երիտասարդական ոգևորությամբ ու ներշնչանքով:

*ՊՈՂՈՍ ՀԱՅԹԱՅԱՆ*




ՎԱՀՐԱՄ ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Քաղաքի բոլոր հնարավոր տեղերում նստած ձյունը իր սառնությամբ քաշեց հանեց ինձ քնի միջից: Դեռ մութ էր, և ես ուրախացա ,որ հիմա շատ արթուն մարդիկ կան, դրանց թվում և իմ ուսուցիչներն ու դասընկերները: Շուտով փաթիլների պես կհավաքվենք մեր դասարանում: Ու կհալվենք: Կծիծաղենք, նոր բաներ կպատմենք, կհիշենք անցած տարվա դեպքերը: Բոլորս էլ շատ ծիծաղելի բաներ ենք արել, ամենից շատ՝ ես: Ես տխրեցի. մի՞թե ոչինչ չի մոռացվել: Չէ՛ որ ես՝ էլ ես չեմ: Հիմա նոր տարի է և շատ եմ փոխվել: Մեծացել, դարձել եմ ավելի լուրջ ու թախծոտ: Հասկացել, որ բոլորի առջև չի կարելի լինել միատեսակ: Մեր դասարանում կան մի քանի տղաներ՝ Լևոնը, Հայկն ու Աշոտը, որոնց ներկայությամբ չի կարելի մի լավ բան առաջարկել: Նրանք կսկսեն ծաղրել կամ այնպիսի բաներ կասեն, որ բոլորն էլ, նույնիսկ առաջարկողը, կսկսեն կասկածել:

Այդ պատճառով այս տարի մեր դասարանը չմասնակցեց մեծ տոնածառին, որ կազմակերպվել էր թատրոնի շենքում՝ մանուկների համար: Պարզվեց, որ այս տարի առաջին անգամ շատերը տանը տոնածառ չեն դնելու, և դա շատ տխուր բան էր: Մեր հայրիկներն ու մայրիկները վճռել էին, որ մեծացել ենք, և ովքեր փոքր քույր ու եղբայր չունեին՝ զրկվեցին տոնածառից: Ես առաջարկեցի տոմսեր վերցնել ու մասնակցել Մեծ Տոնածառի հանդեսին: Դա շատ ավելի մեծ էր, քան բոլորինս միասին: Բայց Լևոնը հեգնանքով ասաց, որ մենք երեխաներ ենք: Հայկը ասաց, որ բոլորը ընկել են իմ խելքին, իսկ Աշոտը «պաշտպանեց».

— Ո՛չ, ինչո՞ւ, բոլորս էլ գնանք գժի տոնածառին:

Դա այնքան լավ ստացվեց, որ նախ ակամայից ես էլ ժպտացի, իսկ հետո այտերս ձգվեցին ու սառեցին: Ես նայեցի մեր դասարանցիներին՝ Հասմիկին, Գայանեին, Գագիկին, Հակոբին ու մյուսներին, որոնք իմ խելքին էին: Մենք միասին շատ բաներ էինք կազմակերպել: Անցած տարի, օրինակ, դպրոցի թաղից հավաքեցինք ամբողջ մետաղի ջարդոնը և այնպիսի մի մեծ˙կույտ էինք սարքել դպրոցում, որ դա սկսեց դուր չգալ մեր դիրեկտոր ընկեր Հարությանին: Նա չէր կարծում, որ այդքան կհավաքենք, առհասարակ մաքրության կողմնակից է, և դպրոցում մենք տնային հողաթափերով ենք շրջում: Նա հրամայեց վերացնել այդ կույտը ինչպես կարող ենք: Եկան հարևան դպրոցի աշակերտները, հավաքեցին այդ ամենը և հաղթական տարան: Հետո տեսանք, ինչպես եկան բեռնատարները ու ջարդոնը տարան նրանց դպրոցի բակից: Մրցությունում նրանք հաղթեցին, իսկ այդ դեպքից հետո մեր եռյակը ավելի կծու դարձավ:

Դրանից հետո ես մի ուրիշ բան հղացա. կազմակերպել գրքի քննարկում: Մի գիրք ես շատ եմ սիրում և կարդացել եմ մի քանի անգամ: Այն մի տղայի մասին է, որն ուշք ու միտքը տվել էր կրկեսին և ուզում էր ակրոբատ դառնալ: Ամբողջ ժամանակ մարզվելով, նա դադարել էր պարապելուց և նույնիսկ դուրս եկավ դպրոցից, մինչև համոզվեց, որ առանց սովորելու ոչինչ հնարավոր չի դառնալ: Ինձ Վիտյան թվում էր ամենահետաքրքիր տղան աշխարհի երեսին, նույնիսկ նախանձում էի նրան և որպեսզի ինքս ինձ ապացուցեմ, որ այդպես չի, կազմակերպեցի գրքի քննարկումը: Դասերից հետո մի քսան րոպե նստեցինք դասարանում, մինչև մեր ավագ ջոկատավարը համոզվեց, որ ոչ ոք կարծիք չունի գրքի մասին ու չի ուզում ելույթ ունենալ: Տղաները նախանձում էին, կարդալով Վիտյայի վարժեցրած շների ու մկների մասին, աղջիկները գտնում էին, որ նա գժի մեկն է:

Այժմ ես տեսա, որ ոչ մեկը իմ խելքին չէ և չի ուզում գնալ տոնածառ: Մի՞թե իրոք մեծացել էին: Իմ անունը մնաց «գժի տոնածառ»: Առաջ լաց կլինեի, բայց հիմա ինձ զսպեցի, լուռ հեռացա, և աղջիկները, անգամ Հասմիկը, դա չնկատեցին ու ոչինչ չասացին:

Ձմեռային արձակուրդները ձնակույտի պես գլորվեցին ու անցան: Ես փոխվել էի, լրջացել, դարձել ավելի թախծոտ ու այս անգամ հաստատապես վճռել էի ինձ պահել սառը, հնարավորին չափ առանձնացած և միայն դասերս սովորել: Ես պատկերացնում էի, թե ինչպե՞ս բոլորը դա կնկատեն և կսկսեն ինձ հետ վե-

րաբերվել որպես մեծի: Բայց ես այլևս ոչ մի բան չեմ կազմակերպի: Երբ տնից դուրս եկա, ձմեռային աղջամուղջը լցվեց աչքերիս մեջ, և ես քայլելով նայում էի անասելի պայծառացած ու ձյան վրա բեկբեկվող լույսերին :Ահա անթիվ ոտնահետքեր, որոնք դեռ չէին հասցրել կեղտոտել ամբողջ գիշեր մաղված, ճռթճռթան ձյունը: Փոքրիկները մայթի վրա սահելով սառցաշերտեր էին գոյացրել: Ես նույնպես սահեցի և ընդարձակեցի սահադաշտը: Այնքան լավ էր, որ ես հանկարծ տխրեցի, որ մեր դասարանի աղջիկներից ոչ մեկը չկար: Ես զգացի, որ կարոտել եմ բոլորին, նույնիսկ ընկեր Հարությանին, Լևոնին ու Աշոտին:

Դասարանում անասելի լույս էր: Աղջիկները շատ գեղեցկացել էին: Այդ նրանք են, որ տաս օրվա ընթացքում փոխվել էին, իսկ ես նրանց հայացքների տակ ինձ ավելի փոքր ու երկչոտ զգացի: Հասցրեցի նկատել Հասմիկի ձեռքի այն շարժումը, որն ինձ շատ էր դուր գալիս. նա արագ ուղղեց հյուսքերի մեջ երբեք չտեղավորվող մազափունջը:

Բոլորը կատակում էին, նոր բաներ պատմում և վերհիշում անցածը: Հերթը ինձ էլ հասավ, ու սկսեցին պատմել և՛ մետաղի ջարդոնի մասին, և՛ քըննարկման, և՛ տոնածառի: Ես թևաթափ եղա, բայց ձևացրի, որ այդ ամենը ինձ չի վերաբերվում: Չէ՞ որ ես մեծ էի:

Դասերը այսօր արագ անցան: Ուսուցիչները ժպտերես էին ու լավը: Դասի ժամանակ նոր ձյուն եկավ և մենք զգացինք, թե ինչ հաճելի է դիտել դասարանի լուսամուտից: Վերջին զանգից հետո մենք՝ սլացանք փողոց և, առանց ժամանակ կորցնելու, սկսեցինք ռմբակոծել իրար: Նոր եկած ձյունը փըխրուն էր և ձնագնդի չէր դառնում: Մենք բռերով դաշաղ էինք տալիս իրար երեսի: Հասմիկը ինձ ձյունոտեց ոտքից-գլուխ և այնքան մոտ էր, որ ես կարմըրեցի ու շունչս բռնվեց: Մոռացա, որ մեծ եմ և անմիջապես որոշեցի որպես պատասխան ինչ-որ բան կազմակերպել: Ու ես առանց երկար-բարակ մտածելու՝ կազմակերպեցի իմ վերջին գժությունը: Տղաներով սլացանք խանութ և մինչ աղջիկները իրենց հաղթանակից գոհ վար էին իջնում լիաթոք քրքջալով, մենք գնեցինք շրխկաններ և հարձակվելով նրանց վրա՝ սկսեցինք կրակել: Հարյուրավոր գույնըզգույն կլորակները թափվեցին նրանց վարսերին, ձյան վրա: Դա մեզ շատ ուրախ թվաց, բայց նրանք սարսափահար ճչալով մտան խանութ: Քիչ հետո Հասմիկն ու Գայանեն դուրս եկան վաճառորդուհու հետ: Ես չգիտեի, որ նա Հասմիկի մորաքույրն է: Նա սկսեց գոռգոռալ տղաների վրա և ասաց, որ ես խուլիգան եմ: Որ մեր մասին կպատմի ընկեր Հարությանին, ինձ հեռացնել կտա դպրոցից:

Ախր այս ամենը՝ փուխր, համառ ձյունը, նախշուն շրխկանները, մեր դեմքերի շառագույնը այնքա՛ն գեղեցիկ էր: Ես այդպիսի բան գոնե Հասմիկից չէի սպասում: Նորից փոքրացա, ինչպես երկու շաբաթ առաջ էի, արցունքներս խոշորացած սկսեցին տաքացնել պաղած այտերս: Ես վազեցի մեր տան հակառակ կողմը, որովհետև ուզում էի երկար վազել, բախվելով հաճելի սառը փաթիլներին:

Ինձ թվում էր, թե թիկունքիցս ինչ-որ մեկն էլ է վազում, հևալով ու թփթփալով: Ես կանգ առա ու շրջվեցի: Դա Հասմիկն էր: Նա շառագունել էր ամենագեղեցիկ փայլով, որ երբևէ եղել էր մեր դպրոցի աղջիկների դեմքին, և սև աչքերը լցվել էին ձմեռային լույսով:

Ի՞նչ պետք է ասեր նա՝ չգիտեի, բայց զգում էի, որ դա ամենակարևոր բանը պետք է լինի իմ կյանքում: Նա այդպես էլ արեց:

— Ես այն գիրքը շատ, շա՛տ եմ հավանել,— ասաց նա հևասպառ,— դու ամենահետաքրքիր ու խելոք տղան ես դպրոցում, ավելի հետաքրքիր, քան Վիտյա Մալեևը:

Հետո անվստահ ավելացրեց.

— Սրանից հետո նստիր առջևի նստարանին, լա՞վ, իմ կողքին...

Ես աշխարհի ամենաշփոթված ու երջանիկ տղան եմ: Սովորում եմ վեցերորդ դասարանում, դեռ շատ փոքր եմ, բայց ինչ-որ բան, այնուամենայնիվ փոխվել է:





րը շաբաթ էր, իրիկնամուտ: Հանկարծ դուռը ծեծեցին, Սամվելն էր՝ իմ աշակերտը, հրացանը ձեռքին, փամփուշտակալը գոտուն կապած: Հիշեցի, որ այդ օրը նա դաս էր պատմել, գոհացրել էր ինձ, ես էլ ասել էի՝ լավ պատասխանեցիր, այ հիմա քեզ հետ կարելի է որսի գնալ: Ուրիշ անգամներ նա առաջարկել էր, մերժել էի:

Բռնել ենք որսատեղի ճամփան ու գնում ենք: Գիշեր է, ձմռան պարզ ու ցուրտ գիշեր, երկինքը լիքըն է աստղերով: Գյուղից արդեն դուրս ենք եկել, մի քիչ էլ գնանք, կոլտնտեսության գոմերն են, գոմերից էլ քիչ հեռու՝ դեզերը: Ես լուռ եմ, շարունակ Սամվելն է խոսում: Նա որսորդի տղա է, ինքն էլ՝ որսորդ: Այստեղ ուսուցիչը Սամվելն է, աշակերտը՝ ես: Ծիծաղելով պատմում է, թե մի անգամ աղվեսն ինչպես է խաբել իրեն...

Սամվելն առավոտը դուրս է գալիս գառներին խոտ տալու: Տեսնում է գոմի դռանը լարած թակարդի մեջ աղվեսը թպրտում է: Եղանով մի քանի հարված է հասցնում գլխին, և աղվեսն այլևս չի շարժվում, հանում է նրան թակարդից ու ինքը մտնում է գոմ: Մինչև դուրս է գալիս՝ աղվեսին այլևս չի գտնում:

Խորամանկը սուտմեռուկ էր տվել:

# ...ԱՂՎԵՍԻՆ ԱՅՍՊԵՍ ԵՆ ԿԱՆՉՈՒՄ

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Զրուցելով հասանք դեզերին... Խոտ ենք դուրս քաշում հսկա դեզից, կիսով մտնում դեզի մեջ: Ցուրտ է, հրացանի փողը այնքան է սառել, որ բռնելիս կպչում է ձեռքիս: Մեր դիրքը դեզի մեջ ենք բռնել, որովհետև դեզերի մոտ են տեղավորված կոլտնտեսության ֆերմաները և այստեղ են գալիս գազանները՝ ոչխար կամ հավ գողանալու: Շուրջը լռություն է: Ձմեռը փակել է հորձանուտ գետերի լեզուն, ձյունով ու սառցով պատել դաշտ ու հանդ, բայց մոտակա Ամբարլու աղբյուրի լեզուն չի կարողացել փակել... Հանկարծ մկան ծվծվոց լսեցի: Այնպես թվաց, թե մուկը դեզի մեջ է: Բայց զարմանքս մեծ եղավ, երբ տեսա, որ մկան պես ծվծվացողը Սամվելն է: Աչքերը հառել է հեռվում շարժվող ինչ-որ կետի ու ծվծվում է...

— Ինչո՞ւ ես ծվծվում, Սամվե՛լ,— հարցնում եմ ես,— կփախցնենք որսը, տես, աղվեսը ուղիղ դեպի մեզ է գալիս:

# ՄԱՐԴՈՒ ԱՐՏԱՔԻՆԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԷՈՒԹՅՈՒՆԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

## 1. «ԹՈՂ ՄՈՒՐՃՏԱԿՍ ՈՒՏԻ»

Դուք ձեռնոցներ ունե՞ք: Հավանաբար ունեք: Այդ դեպքում 17-րդ դարի Ռուսաստանում գոյություն ունեցող հասկացողությամբ, դուք շատ երևելի մարդ եք: Այն ժամանակ ձեռնոց հագնելը արքաներին և ականավոր մարդկանց վերապահված արտոնություն էր: Մնացածները ձեռնոց չպետք է ունենային:

Այդպես և մանյակ կարող էին կրել միայն արքաներն ու արքայական տան անդամները:

Դասային և դասակարգային հասարակության մեջ մարդու հագուստը մի տեսակ «տարբերանշան» էր հանդիսանում: Մարդու զգեստին նայելով՝ կարելի էր առավել կամ պակաս ճշտությամբ որոշել, թե սոցիալական ինչ դիրք ունի և հասարակական որ խավին է պատկանում: Այս բնորոշ էր նաև ամենավաղ ժամանակներին: Աֆրիկական ցեղի առաջնորդը, եվրոպացի ճանապարհորդի այն հարցին, թե ով է ինքը, արժանապատվությամբ ցույց է տալիս ուսերին գցած ընձառյուծի մորթին.

— Մի՞թե չես տեսնում:

Ընձառյուծի մորթին չէր կարող կրել մեկ ուրիշը, արքայից բացի:

Եկատերինա 2-րդի ժամանակների Ռուսաստանում, ճիշտ այդպես, կարմիր կրունկներով կոշիկ հագնելը ականավորների արտոնությունն էր: Իսկ դրանից էլ երկու հարյուր տարի առաջ, Իվան Ահեղի օրոք, ականավոր ծագում ունեցող կինը պետք է իրար վրա երեք շրջազգեստ հագներ, որպեսզի ոչ ոք կասկած չունենար հասարակության մեջ նրա գրաված դիրքի մասին: Թվում է, թե դժվար է հորինել այդպիսի զգեստավորումից ավելի անհարմար բան: Բայց, ինչպես հայտնի է, ստեղծագործող միտքը կանգ չի առնում մի կետի վրա: Եվ ահա, իրար վրա հագած շրջազգեստի թևքերն սկըսում են երկարացնել: Երկարացնում են, երկարացնում, մինչև մատների ծայրը, հետո՝ ավելի

*Սամվելը մի պահ ընդհատեց ինձ համար դեռ անհասկանալի ու տարօրինակ այդ «երաժշտությունը» և ասաց, որ աղվեսին այդպես են կանչում... ու նորից շարունակեց ծվծվալ՝ այս անգամ ավելի բարձր ու ավելի անզուսպ: Աղվեսն, իսկապես, հրապուրված գալիս էր դեպի Սամվելի ձայնը:*

*Սամվելը մեղմացրեց ծվծվոցն ու կսմթեց ձեռքս, որը նշանակում էր. «Ի՞նչ ես քար կտրել, կրակիր էլի՜»: Հրացանը բացվեց: Դուրս թռանք՝ աղվեսը չկար: Սամվելը տխուր ինձ է նայում, որ նշանակում է՝ այսքան չարչարանքս ջուրը թափեցիր...*

*Վերադառնում ենք տուն: Ես տխուր եմ, աշակերտիս մոտ՝ ամոթով: Սամվելը ինձ մխիթարելու համար ասում է.*

*— Հայրիկն էլ է շատ անգամ դատարկ տուն գալիս:*

*Ճանապարհին պատահում ենք Սամվելի հորը:*

*— Բան չպատահե՞ց, հա՛,— հարցրեց նա, տեսնելով, որ դատարկ ձեռքով ենք:*

*Տղան պատմեց պատահածը:*

*— Աղվեսին իր խփված տեղում չես գտնի, իզուր չեք փնտրել,— ասում է հմուտ որսորդն ու հրացանն առած գնում դեպի դեզերը: Մեր կրակած տեղից բավականին հեռու, որսորդը տեսնում է վիրավոր փախչող աղվեսին, բռնում և բերում տուն: Ես տանը քնած եմ և քնիս մեջ շարունակում եմ որսը...*

*Առավոտյան մեկը փորձված թմբկահարի պես թմբկահարում է պատուհանս. Սամվելն է: Անսահման ուրախ է: Մենք խփել էինք այն աղվեսին, որին կանչելու համար դեզի մեջ նա մի ամբողջ ժամ մկան պես ծվծվում էր:*

*— Ախր, սա էն աղվեսն է, որ մի անգամ մեր բակում խաբել է ինձ,— ասում է Սամվելն ու քըրքըջում:*

*— Գուցե դա այն աղվեսը չէ,— ասում եմ ես:*

*— Ո՛չ, նա՛ է, նա՛,— մորթին տնտղելով ասում է Սամվելը,— ա՛յ, գույնը կարմիր է, մեջքին էլ սև-սև խալեր կան, նա՛ է, ես ճանաչում եմ:*

*Ես չեմ վիճում Սամվելի հետ, չեմ ասում, թե կարող են շատ աղվեսներ կարմիր մորթի ու սև խալեր ունենալ... Սովորականի պես այդ օրը դպրոց եմ գնում, զանգի առաջին ղողանջի հետ մտնում դասարան: Սովորականի պես դաս եմ պատմում: Իսկ երեխաները լսում են ինձ սովորականից ավելի հափշտակված: Սամվելն արդեն նրանց պատմել է, Սամվելն ինքն ավելի քան մյուսները, լսում է հավատով, հափշտակությամբ:*

*Իսկ եթե գնդակս վրիպած լինե՞ր...*

*Ինչ լա՜վ էր, որ չէր վրիպել:*

---

ված, մինչև որ քսվում է գետնին, վերջապես հասնում ութից-տասը կանգուն[1] երկարության:

Այսպես հագնված կնոջ համար դժվար է նույնիսկ որևէ բան վերցնել ձեռքով: Նախապես պետք է թևքը ծալ-ծալ ետ տանել: Պարզ բան է, նման զգեստով գործ անել չէր լինի: Ասենք, այդ զգեստը գործ անելու համար չէին հագնում: Ընդհակառակը, դիտմամբ էր անհարմար դարձրած այդ զգեստը, որպեսզի շեշտած լինեն, որ դրա կրողն աշխատելու նեղություն չպետք է կրի: Անբանությունն ամոթ չէր համարվում, ամոթ էր, եթե երևար, որ անբան չես:

Հին Չինաստանում անգործության, ուրեմն և հասարակական բարձր դիրքի նշան էր համարվում երկար եղունգները: Որպեսզի այդ փշրվող, խցանահանի նըման ոլորուն «անբանության» սիմվոլները չկոտրվեին, դրանց վրա հատուկ պատյաններ էին հագցնում:

Երբ պարսից արքա Կամբիզը հաղթեց եգիպտացիներին, նա չէր կարող ավելի նվաստացնել պարտվածներին, քան ստիպել, որ փարավոնի և ավնվագարմ պաշտոնյաների դուստրերը կժերըն առած ջրի գնան: Նա հարկադրում էր այդ աշխատանքի ժամանակ ներկա լինել նրանց հայրերին, որոնք կուրծք էին ծեծում ու հեկեկում այդ նվաստացումը տեսնելով: Հապա ի՜նչ, ամենից նշանավոր և ամենից հարուստ ընտանիքների երեխաներին ենթարկում էին անարգանքի՝ ստիպում էին աշխատել:

Երբ Նապոլեոնի մարշալ Մյուրատը փոփոխամիտ, քմահաճ կնոջ նման ամեն անգամ մի նոր համազգեստ էր հագնում՝ դա միայն իր անձնական ճաշակով կամ հակումներով չպետք է բացատրել: Պրուսական կամպանիայի ժամանակ նա Փարիզից



բերել է տալիս իսկայական գումարի՝ 27 հազար ֆրանկի փետուրներ: Նապոլեոնյան փառահեղ մարշալն իր շքեղ հանդերձներով պետք է ընդգծեր իր գրաված բարձր դիրքը կայսրության մեջ:

[1] Կանգուն=0,5 մետր

Միանգամայն տրամաբանական է, որ դասային հասարակության մեջ հենց համազգեստը, շքեղ համազգեստն է դառնում սոցիալական բարձր դիրքի պարտադիր հատկանիշը: Բարձրաստիճան պաշտոնյայի համազգեստ, սպայական համազգեստ,



ժանդարմի, ազնվականի համազգեստ: «Համազգեստի պատիվը» ոչ այլ ինչ էր, քան այս կամ այն սոցիալական դասի պատիվն ու արժանապատվությունը:

Այդ պատճառով Քիշնևում եղած ժամանակ Պուշկինը շատ հաճախ միակ քաղաքացիական զգեստ կրողն էր սեղանի շուրջը նստածների մեջ: Հետևելով սահմանված կարգին, սպասավորը նրան մատուցում է ամենից վերջում: Այսպիսի մի դեպք Պուշկինը հիշում է իր «Ճանապարհորդություն դեպի Էրզրում» գրքում, երբ նրան ճաշի է հրավիրում հայտնի ուտող-խմող գեներալ Ստրեկալովը:

Արևելքում մի առակ կա Խոջա-Նասրեդդինի մասին: Խոջան մի անգամ հայտնվել է մի բեկի մոտ՝ խնջույքի: Աղքատիկ հագնըված իմաստունին նստեցրել են ամենավերջին տեղերից մեկում և ճաշի մնացորդներ հրամցրել: Այդ ժամանակ Նասրեդդինը աննկատ դուրս է գալիս, գնում տուն, հագնում իր ամենաթանկ մուշտակը և վերադառնում խընջույքի: Շքեղ հագնված հյուրին տեսնելով, տանտերը ոտնաձեռ է ընկնում, հրամայում է իր մոտ նստեցնել նրան: Այժմ արդեն առաջաշարժ սպասավորները մեկը մյուսի հետևից ամենահամեղ ուտեստները դնում են Խոջայի առաջ: Ի՞նչ է անում Խոջան: Հանելով մուշտակը, սկսում է հյուրասիրել մուշտակին, ասելով.

— Կե՛ր, մուշտա՛կս, կե՛ր, մի՛ ամաչի: Էս փլավն անո՛ւշ արա: Համով է, չէ՞:

Երբ զարմացած բեկը հյուրին հարցնում է, թե այդ ի՞նչ է անում, Խոջան անվրդով բացատրում է.

— Եթե պատիվը մուշտակիս են տալիս և ոչ թե ինձ, թող նա էլ անուշ անի:

Պետրոս I-ի «Աստիճանների ցանկում» գրել է, որ ամեն մի պաշտոնյա պարտավոր է հագնըվել ըստ իր պաշտոնական դիրքի, ոչ ավելի լավ, ոչ էլ վատ, այլ այնպես, «ինչպես աստիճանն ու պաշտոնի բնույթն են պահանջում» : Հետագայում, Ելիզավետայի թագավորության օրոք, այդ օրենքը տարածվում է չինովնիկների կանանց վրա ևս: 1742 թըվականին Ելիզավետայի հրապա-



րակած հրամանագիրը միայն «առաջին հինգ դասի անձանց» էր արտոնում մետաքս, դիպակ և ժանյակ հագնել: Ըստ որում ժանյակը չորս մատից լայն չպետք է լիներ: Երրորդ դասին պատկանողները կարող էին զգեստ կարել թավշից կամ այնպիսի կըտորից, որի արշինը երեք ռուբլուց թանկ չպետք է լիներ: Աստիճան չունեցողներին կարգադրվում էր «ոչ իրենք, ոչ իրենց կանայք թավիշ չհագնեն»:

Թվում է, այս բոլոր փաստերը վաղուց ի վեր անցյալի գիրկն են անցել և ոչ մի կապ չունեն այսօրվա հետ: Դժբախտաբար, այդ-



պես չէ: Պարզվում է, որ չափազանց մեծ է իներցիայի ուժը: Եվ երբ որևէ աղջիկ, մեր հարգելի ժամանակակիցը, վերարկուի կամ զգեստի համար կտոր ընտրելիս, առաջնորդվում է այն մտքով, թե ո՞րն ավելի «թանկ» տեսք ունի, ապա դրա ակունքները հեռու անցյալում պիտի փնտրել:

«Թանկ հագնվելու» ձգտումը մեզ է հասնում այն հեռավոր աստղի լույսի նման, երբ աստղը վաղուց մարել է, իսկ նրա լույսը շարունակում է գալ: Երբ գրվում են այս տողերը, հենց այդ պահին ոմն Մանյա կամ Նատաշա ինչ-որ մի խանութում մտատանջության մեջ է. ո՞ր կոշիկները գնի՝ սպիտա՞կը, թե՞ դեղինը: Սպիտակ կոշիկները շատ են դուր գալիս նրան, բայց ավելի «էժան» տեսք ունեն, քան դեղինները: Եվ ահա կանգնել ու մտածում է: Եվ, հավանորեն, կըգնի ավելի թանկ տեսք ունեցող կոշիկներ:

Ով կօգնի այդ Մանյային կամ Նատաշային: Գուցե նա՞, ով կարդում է այս տողերը:

# ՓՈՐՁԵՔ ԼՈՒԾԵԼ

«Սիրելի՛ երեխաներ, «Պիոներսկայա պրավդա» թերթում կարդացինք ձեր դպրոցի «XYZ» ակումբի մասին: Մեր ինստիտուտում արդեն մի քանի տարի է, ինչ գործում է ուսանողական գիտական ընկերություն՝ ՈՒԳԸ, որի հրատարակած թերթում հաճախ տպագրվում են յուրահատուկ խնդիրներ: Դրանք սիրով լուծում են մեր ֆակուլտետի ուսանողները: Նրանց շատ հետաքրքրեցին ձեր գյուղի Տիգրան պապի, Աշխեն տատի, Լևոն պապի պատմած ու հայկական մյուս հնագույն խնդիրները: Այդ պատճառով էլ որոշեցինք դիմել ձեզ: Կարո՞ղ եք ուղարկել այդպիսի խնդիրներ:

Շատ կցանկանայինք մոտիկից ծանոթանալ ձեզ ու ձեր ակումբի աշխատանքների հետ»:

Այս նամակը գրել են Մոսկվայի Կրուպսկայայի անվան մանկավարժական ինստիտուտի մաթեմատիկայի ֆակուլտետի ուսանողները՝ Զանգեզուրի Լեռնաձոր գյուղի դպրոցականներին:

Ի՞նչ է իրենից ներկայացնում այն ակումբը, որի մասին խոսվում է հիշյալ նամակում:

Ակումբը ստեղծվել է անցյալ տարի՝ մաթեմատիկայի ուսուցիչ Ռոբերտ Էջանանցու ղեկավարությամբ և ունի իր բաժինները: Բաժնի անդամները հաճախ են լինում Մամիկոն, Լևոն և Բախշի պապի, Նազան տատի, Արտաշես քեռու մոտ և գրի են առնում նրանց թելադրած խնդիրներն ու բանահյուսական այլ նյութերը: «Զարմանալի թվերի սրահի» աշխատանքները ղեկավարում է Սուրիկ Ներսիսյանը, իսկ մամուլի բաժինը՝ Մանվել Թևանյանը: Խմբկոլը պատրաստել է «Պատանի մաթեմատիկոսի ծոցատետր», «Բարև, ֆիզիկա» և այլ թերթեր, «Էվրիկա» անունով գրադարանը, որտեղ ամենից ավելի մաթեմատիկական գրքեր են հավաքվել ակումբի անդամների ջանքերով:

Երբ տրվեց «Միշտ պատրաստ» համամիութենական պիոներական երթի մեկնարկը, ակումբն ավելի ընդարձակեց իր գործունեությունը: Այժմ պատրաստում են «Ունկնդիր են եղել մեր զանգին» շարքը, որը պատմելու է լավագույն շրջանավարտների մասին: Ակումբը կապ է հաստատել հայ գիտնականների հետ: Ղափանի դպրոցականների հավաքների ժամանակ ակումբի սաները մշտապես հանդես են գալիս հետաքրքիր զեկուցումներով ու նոր մտահղացումներով, որի համար էլ արժանանում են խրախուսանքների ու պարգևների:

Ստորև տպագրում ենք նրանց հավաքած ժողովրդական խնդիրներից: Փորձեք ինքնե՛րդ լուծել դրանք:

*ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ*



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

**1. Թութակը դպրոց բացեց ճըպուռի ու ծղրիդի համար: Թվաբանության դասին թութակը մի խնդիր առաջադրեց.**

**— Եթե ճպուռը Ծղրիդին տա իր մոտ եղած ծաղկաթերթիկների կեսը և մեկ հատ ևս, ապա Ծղրիդը կունենա այնքան, որքան ճպուռն ուներ: Իսկ եթե Ծղրիդը կամենա ճպուռին տալ իր բոլոր ծաղկաթերթիկները, ապա ճպուռը կհիանար 11 ծաղկաթերթիկով: Քանի՞ ծաղկաթերթիկ ուներ նըրանցից յուրաքանչյուրը:**

**2. Մի օր երբ ձագեր երևան եկան փեթակում, մայր մեղուն դարձավ բոռին, ասաց. «Մենք մեր մեղուներից 3 անգամ քիչ ձագեր ունենք: Եթե մենք լինեինք այնքան, որքան կայինք և էլի այդքան, և դարձյալ մեր նոր ընտանիքի չափ ու մեկ հետ էլ Նեկտարիկենց ընտանիքը, որ 1000 մեղու է, ապա այդ բոլորը կկազմեր կես բյուր (մեկ բյուրը=10000): Քանի՞ ձագ ենք ունեցել մենք»:**

**Բոռը չկարողացավ լուծել մայր մեղվի խնդիրը, ու նրան դուրս շպրտեցին:**

**3. Եթե Ոսկուհի տատիկը ձեկ տա իր մոտ եղած գլուխ պանիրների կեսը և էլի կես գլուխ պանիր, ապա իր մոտ 2 գլուխ պանիր կպակասի: Քանի՞ գլուխ պանիր ուներ Ոսկուհի տատիկը: (Լուծել 3 րոպեում):**



# Ինչպես էր կախվում նկարը

Ջերոմ Ք. Ջերոմը (1859—1927) անգլիացի նշանավոր գրողներից է: Նա զվարճալի, նուրբ հումորով գրված բազմաթիվ գրքերի հեղինակ է, որոնք թարգմանվել ու մեծ ընդունելություն են գտել ամբողջ աշխարհում: Ջերոմի «Երեք մարդ մեկ նավակի մեջ» վեպը այսօր դասվում է լավագույն երգիծական ստեղծագործությունների շարքը:

Տպագրում ենք այդ գրքից մի հատված, որը անգլերենից թարգմանել է Միշա Գյուլոյանը:

Հենց որ իմ քեռի Բոջերը որևէ բան էր անելու լինում, տան մեջ չտեսնված իրարանցում էր սկսվում: Եթե շրջանակ շինողից մի նկար էր բերում, որ կախեր ճաշասենյակում, և մորաքույր Բոջերը հարցնում էր՝ ինչի՞ համար է, քեռի Բոջերն ասում էր.

— Քո գործը չի, ոչ մեկդ մոտ մի՛ եկեք, ես ինքս ամեն ինչ կանեմ:

Եվ հանում էր բաճկոնն ու սկսում: Աղջկան ուղարկում էր մեխ գնելու, հետո տղաներից մեկին ուղարկում էր նրա հետևից՝ բացատրելու գնելիք մեխի չափը:

— Վի՛լ, գնա մուրճս բե՛ր,— գոռում էր,— Թո՛մ, դու էլ քանո՞նս բեր. սանդուղք է պետք, խոհանոցից էլ մի աթոռ բերես լավ կլինի: Լսի՛ր, Ջի՛մ, վազիր միստր Գոգըլզի մոտ և ասա՛. «Հայրիկը բարևում է և հույս ունի, որ սրունքդ արդեն լավացել է, և եթե կարելի է հարթաչափը տվեք»: Իսկ դո՛ւ, Մարի՛ա, չլինի՞ թե մոտիցս հեռանաս, որովհետև մեկը պիտի ճրագը մոտիկ բռնի, և երբ աղջիկը վերադառնա, պիտի որ նորից գնա և նկարի համար պարան գնի, և Թոմը... Ո՞ւր է Թոմը... մո՛տ արի, Թո՛մ, որ նկարը ինձ տաս:

Հետո բարձրացնում էր նկարը ու գցում գետին, շրջանակը դուրս էր ընկնում, ապակին ջարդվում էր, ձեռքը կտրվում, ինքն այս ու այն կողմ ցատկոտելով, սկսում էր թաշկինակը փնտրել: Թաշկինակը չէր գտնվում, որովհետև հանած բաճկոնի գրպանում էր, և չգիտեր, թե ուր էր դրել բաճկոնը, բոլորը ամեն բան թողած՝ սկսում էին բաճկոնը փնտրել, իսկ ինքը խոսում էր ու խանգարում.

— Ամբողջ տան մեջ մեկը չկա, որ բաճկոնիս տեղն իմանա: Այսպիսի մարդիկ կլինե՞ն... վեց հոգի եք և չեք կարողանում մի բաճկոն գտնել, որն հինգ րոպե առաջ եմ հանել: Ճիշտ որ...

Հետո ոտքի էր ելնում ու տեսնում, որ բաճկոնի վրա էր նստած, և բացականչում էր.

— Ա՜հ... այդպես էլ գիտեի: Ես որ չգտնեմ, ո՞վ կգտնի: Ավելի շուտ կատուն կգտնի, քան ձեզնից որևէ մեկը:

Երբ կես ժամ մատը կապելով զբաղվելուց հետո, նոր ապակի վերցնելուց հետո, գործիքները, սանդուղքը, աթոռը, ճրագը բերելուց հետո, փորձում էր երկրորդ անգամ, ամբողջ ընտանիքը, նաև աղջիկն ու ծառան, բոլորում էին շուրջը՝ պատրաստ կանգնում: Երկու հոգի բռնում էին աթոռը, երրորդն օգնում էր բարձրանալ ու կանգնել, չորրորդը մեխ էր մատուցում, հինգերորդը մեկնում էր մուրճը, իսկ նա վերցնում էր մեխը և... գցում գետին:

— Տես է՛...— ասում էր վախվորած,— հիմա էլ մեխը կորավ...

Եվ ամենքս, չոքեչոք սողալով, մեխն էինք փնտրում, մինչդեռ ինքը աթոռին կանգնած, մրթմրթում էր և հարցնում, թե ամբողջ գիշեր այդպես պիտի սպասի՞...

Վերջապես մեխը գտնվում էր, բայց մինչ այդ կորսվում էր մուրճը:



— Ո՛ւր է մուրճը: Ի՛նչ արի մուրճը: Աստվա՛ծ իմ...Յոթ հոգի այդպես բերաններդ բաց կանգնել եք և չգիտեք, թե մուրճն ինչ արի:

Մուրճը գտնում էինք, բայց հիմա էլ պատի վրա մեխի անցքի նշանն էր կորած լինում, ու հիմա էլ ամեն մեկս պիտի բարձրանայինք աթոռի վրա և փնտրեինք, ամեն մեկս փնտրում գտնում էինք տարբեր տեղեր, և նա մեզ ապուշ էր կոչում և հրամայում աթոռից իջնել: Եվ քանոնը վերցնում ու նորից էր չափում և որոշում էր, որ նշանը պիտի գտնվեր անկյունագծից երեք սանտիմետր աջ, և ջանում էր ճշգրտորեն որոշել կետը:

Եվ մենք բոլորս ջանում էինք գտնել կետը, և բոլորս տարբեր տեղեր էինք մատնացույց անում, և իրար հետ չէինք համաձայնում: Եվ ընդհանուր վեճի ընթացքում բուն նյութը մոռացվում էր, և քեռի Բոջերը ստիպված էր լինում նորից չափել:

Այս անգամ այնքան էր լարվում, որ չէր զգում աթոռի քառասունհինգ աստիճան թեքվելը և վայր էր ընկնում դաշնամուրին, հնչեցնելով հազվագյուտ երաժշտական ակորդ՝ գլխով ու մարմնով բախվելով բոլոր ստեղներին:

Վերջապես քեռի Բոջերը մի վերջին անգամ նշանակում էր կետը, ձախ ձեռքով հպում մեխի ծայրը և աջով վերցնում մուրճը. և առաջին հարվածով ճզմում էր բթամատը և, ճչալով, մուրճը նետում ցած՝ որևէ մեկիս ոտքի մատներին:

Քեռակին Մարիան հեզաբար նկատել էր տալիս, թե երբ հաջորդ անգամ քեռի Բոջերը պատին մեխ խփելու լինի, հուսով է, որ իրեն նախապես կտեղեկացնի, որպեսզի ինքը այդ ժամանակ մեկ շաբաթով այցելության գնա իր մայրիկին:

— Ա՜խ, դուք կանա՜յք, միայն աղմկե՜լ գիտեք: Ինչ ուզում եք ասեք, ես սիրում եմ տանս մեջ այսպիսի մանր-մանր գործեր անել:

Եվ հետո էլի էր փորձում, և երկրորդ հարվածով մեխն ուղղակի ծեփի մեջ էր մտնում, և մուրճի կեսն էլ՝ հետևից, և քեռի Բոջերը խփվում էր պատին այնպես թափով, որ քիթը տափակում էր:

Հետո պիտի քանոնը նորից գտնեինք, և պատին նոր անցք պիտի բացվեր, և կեսգիշերի մոտ նկարը զետեղվեր՝ շատ ծուռ և անհարմար տեղ և պատն էլ ասես փոցխով փոցխված լիներ, և բոլորս՝ հոգնած ու խեղճացած, բացի քեռի Բոջերից:

— Այս էլ այսպե՜ս,— ասում էր նա՝ աթոռից իջնելով ու ծառայի ոտքի կոշտուկները ծանր-ծանր տրորելով: Եվ, դիտելով իր գործած ավերումները, բացահայտ հպարտությամբ ավելացնում էր.

— Մարդիկ կան, որ այսպիսի մանր-մունր բաների համար վարպետ են կանչում...

Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը

# ԼՈՐՏՈՒ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Սա անոտ մողես է և արտաքուստ այնքան նման է օձի, որ ժողովուրդը դարեր շարունակ օձ է համարել սրան, բայց իմացել է, որ թույն չունի: Եվ որովհետև օձ են կարծել, հայագետներն էլ հնում բառարաններ կազմելիս ամեն տեղ այս մողեսին օձ են հայտարարել: Մինչդեռ լորտու ասելով հայ լեզվի բոլոր բառարաններում էլ հասկանում ենք հանրածանոթ այն սողունը, որը ունի հետևյալ նշանները. մեջքը համատարած միագույն թխավուն է՝ ձիթապտղի երանգով, իսկ փորը բաց գույնի է, հաճախ դեղնավուն, այդ պատճառով էլ ռուսները желтопузик են ասում, որ դեղնափոր կնշանակե: Եվ այժմ մեր հինավուրց լորտուն, որը նույնիսկ Մովսես Խորենացու 5-րդ դարում գրած «Հայոց պատմությունում» լորտու է, այժմ բառարաններում **դեղնափորիկ** է դարձել:

Այս խառնաշփոթությունը միայն բառարաններում է, իսկ ժողովուրդը լավ ճանաչում է այդ սողունին: Բացի վերև ասածս նշաններից, ժողովուրդը գիտե, որ բարակ-երկար սողուն է դա, շատ երկար է մանավանդ պոչը, որը կազմում է մարմնի ամբողջ երկարության մոտ երկու երրորդ մասը: Գիտե, որ երբ բռնում ես, նույնիսկ չի կծում. անվնաս, բարեհամբույր սողուն է և մարդուն բարեկամ նրանով, որ ոչնչացնում է գյուղատնտեսության վնասատուներին և նույնիսկ հալածում է թունավոր օձերին: Երևանում և նրա շրջակայքում, մանավանդ Արարատյան դաշտի գյուղերում, մարդիկ գիտեն, որ այն այգում, ուր լորտու կա՝ օձեր չեն լինում: Այդ պատճառով էլ հնում այգետերերը ճանաչում էին իրենց այգու բնակիչ, նրա «պահա-

պան» լորտուին: Ճանաչում էին, սիրում և նրան սպանելը մեղք էին համարում:

Մարդու հետ ունեցած իր դարավոր բարեկամության համար, մարդուն ատելի մկներին, օձերին ոչնչացնելու համար, լորտուն շատ վաղուց է վաստակել «տան պահապան» կոչումը ոչ միայն մեզ մոտ, այլև պատմական Հայաստանին հարևան ժողովուրդների մեջ:

Ահա այս համակրելի սողունին է, որ հիմա պիտի ծանոթանանք ավելի մոտիկից:

Ամենից առաջ, այդ ինչպե՞ս է, որ ամեն ինչով օձի նման այս կենդանուն գիտությունը մողեսների դասն է կարգել: Եթե մոտիկից դիտենք լորտուին, նախ կտեսնենք, որ նրա աչքերը բաց են, իսկ օձինը ծածկված են լինում իր շապկով («խորխով»): Հետո, աչքերը լավ զարգացած կոպեր ունեն և լորտուն աչքերը թարթում է, իսկ օձը կոպեր չունի և աչքը չի թարթում: Այնուհետև, օձը շապիկ ունի, որ ամեն տարի փոխում է, իսկ լորտուն շապիկը չի փոխում: Եվ, վերջապես, եթե ուշադիր նայենք, կտեսնենք, որ նրա հետանցքի երկու կողմերում փոքրիկ ուռուցիկներ կան. դրանք ետին վերջավորությունների մնացորդներն են, որ ներսում են, ծածկված են մորթով: Ուրեմն, լորտուն մի ժամանակ ոտքեր է ունեցել, որոնք հազարամյակների ընթացքում ետ են զարգացել ու դրսի կողմից չեն երևում, ու, այդպիսով, նա լրիվ օձի կերպարանք է առել:

**Ահա այս նշանները և ուրիշ մի շարք նշաններ** (թեփուկները, ատամների կազմությունը և այլն) այս սողունին հեռացնում են օձերից և մտցնում են անոտ, օձանման, **օձակերպ մողեսների** ընտանիքի մեջ, որովհետև թվածս նշաններով միայն մողեսներն են օժտված:

Լորտուն բավական սուր տեսողություն ունի, որովհետև աչքի բիբը բաց է: Հեռվից նկատելով վտանգը, արագ փախչում, թաքնվում է: Առհասարակ զգույշ կենդանի է:

Բնավորությամբ չար չէ, և փորձերը ցույց են տվել, որ շուտ մտերմանում է մարդուն:

Այդ մտերմությունը մարդու հետ ավելի սերտ կլիներ, եթե չլիներ իր օձակերպ արտաքինը:

Մի անգամ Լուսակերտի իմ պարտեզում, խոտերի միջով խշշոցով մի սողուն անցավ և հենց դուրս սողաց ցանկապատից, երեխաները ճչացին.

— Օ՜ձը, օ՜ձը...— և սկսեցին քարեր նետել:

Մինչև տեղ հասա, սողունն արդեն մեկնվել էր արյունաթաթախ. մի անմեղ լորտու էր: Միակ մեղքն այն էր, որ օձի կերպարանք ուներ...

Ճիշտ այդպես հարյուրավոր և հազարավոր լորտուներ են զոհ գնում մարդկանց անգիտությանը. անակնկալի եկած մարդը հաճախ առաջին հայացքից չի կարողանում որոշել՝ տեսածն օ՞ձ է, թե՞ անոտ մողես:

Ո՞րն է լորտուի սնունդը: Զանազան տեսակի խոշոր միջատներ, մողեսներ, մկնակերպ մանր կրծողներ: Խխունջներին իրենց պատյանի հետ բերանն է գցում և խրթխրթալով ջարդում-մանրում է բութ և ամուր ատամներով: Տեսնողները պատմում են, որ լեզվով շոշափում է առարկաները և որոշում ինչը ուտի, ինչը՝ ոչ:

Ես չեմ տեսել, թե ինչպես է այդ մողեսը հաղթում, սպանում և կուլ տալիս երբեմն իրենից խոշոր, թունավոր օձին՝ գյուրզային, բայց այստեղ մեջ կբերեմ Լենինգրադից ինձ հյուր եկած բնասեր-գրող Տ. Տիխովայի տեսածը: 1962 թ. աշնանը նա գնաց Խոսրովի անտառը, ծանոթացավ այնտեղի կենդանիների կյանքին և վերադառնալով, մի զարմանալի դեպք պատմեց ինձ:

— Ես, հեռադիտակն աչքերիս, իմ թաքստոցից դիտում էի շրջապատս,— պատմում է նա:— Ահա իմ դիմաց, բոլորովին մոտիկ մի սալ քարի պառկած է գյուրզան: Մոտով եղջերվի մի ձագ անցավ: Գյուրզան դուրս եկավ թմրած վիճակից, իր մարմնի օղակի միջից բարձրացրեց գլուխը և հանկարծ քարի վրա հայտնվեց մեջքը թուխ, փորի տակը շեկ մի խոշոր լորտու: Առանց վարանելու, նա ուղղվեց դեպի գյուրզան, հասավ, կծեց դունչը: Դարձյալ ֆշշացրեց, դարձյալ կծեց. էլի ու էլի... Ապա ուշադրություն չդարձնելով ստացած խայթոցներին (քանի որ խայթոցներն անվնաս են նրա համար), իր ծանր գլխով գյուրզայի գլուխը հրեց մեկ աջ մեկ ձախ, մեկ աջ մեկ ձախ, մինչև որ սա անդամալույծի նման մեկնվեց: Ապա առաջ սողաց, պոչի հաստ տեղը հավասարեցրեց գյուրզայի գլխին և պոչը վեր բարձրացնելով՝ ծանր լախտի նման իջեցրեց հակառակորդի վզին: Խփեց ինչպես գավազանով կփխեն՝ մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, ջարդեց գյուրզայի վզի ողները, ապա շուռ եկավ և առանց շտապելու սկսեց կուլ տալ իր զոհին: Քիչ անց թունավոր օձի միայն պոչն էր մնացել լորտուի դնչից կախ...

Ի՞նչ միջավայրում է ապրում լորտուն: Շատ հանդիպում է Երևանի շրջակայքի և Արարատյան դաշտի այգիներում, լանջերի խոտոտ, քարքարոտ, թփոտ տեղերում, ուր թաքնվելու հնարավորություններ կան: Իհարկե, ամենից հաճախ Արաքսի հովտում և նրան

մերձակա բլուրներին ու լանջերին է հանդիպում, բայց ապրում է նաև լեռնային սարահարթերում, ինչպես, օրինակ, Վարդենիսի, Հրազդանի շրջաններում: Կա նաև Արագածի լանջերին, Ղափանում՝ Ողջի գետի հովտում, Մեղրու շրջակայքում, Ալավերդու շրջանի ոչ անտառոտ մասերում, քանի որ այդ օձը անտառներ չի սիրում:

Ձմռան քնից արթնանում է և բնից տաքանալու է դուրս գալիս բավական վաղ՝ մարտի սկզբներին: Մայիսին-հունիսին էգն ածում է մինչև 10 ձու: Մոտավորապես մինչև երկու տարեկան դառնալը ձուտերի մարմնի և պոչի վրա թուխ շերտիկներ են նկատվում, որոնք լինում են իրար զուգահեռ, բայց ոչ հավասար գծերով: Խոշորանալով, լորտուն հասնում է մինչև 120, երբեմն 150 սմ երկարության:

Վերջում՝ կենսաբանական կարգի մի հարց՝ կապված լորտուի արտաքինի հետ:

**Միմիկրիա** կոչվող մի երևույթ կա, որ մենք երբեմն տեսնում ենք բնության մեջ: Այդ այն երևույթն է, երբ որևէ կենդանի, ինքնապաշտպանության բնազդով, ընդունում է մի այլ կենդանու կերպարանքը: Այսպես, ուշադրություն դարձրե՞լ եք, թե կկուն իր արտաքինով որքան նման է բազեի փոքր տեսակներին: Այդ նմանությունից նա օգտվում է, նրա բազեանման կերպարանքը հաճախ է պաշտպանում իրեն, որպես նախազգուշացնող գործոն: Կարծում եմ լորտուն, որ մի ժամանակ ոտքեր ունեցող մողես էր, ժամանակի ընթացքում օձի կերպարանք է առել իր թշնամիների սիրտն ահ գցելու նպատակով: Իհարկե, այդ մողեսը որքան էլ ցանկանար չէր կարող օձանման մարմին ստանալ: Ուղղակի այն մողեսները, որոնք իրենց արտաքինով ավելի են նման օձի, ահ են տարածել իրենց շուրջը, ուրեմն և քչերն են կոտ գնացել գոյության կռվում: Նրանցից ծնվածների մեջ էլ ավելի հաջող ապրել ու սերունդ են տվել առավել օձակերպները, և այսպես, ժամանակի ընթացքում ձևափոխվել է այսօրվա լորտուն: Եթե օձին նմանվելը չօգներ նրա ինքնապաշտպանությանը, ոտքերը ետ չէին կարգանա և նրանց մնացորդները վերջնականապես չէին թաքնըվի կաշվի տակ:

Այդ կերպարանափոխությունը նրան շատ է հարկավոր եղել: Բայց այժմ, երբ շատացել է մարդը, վոխտում է ամենուրեք, մշակում է ամեն թիզ հողը, այլևս ձեռնտու չէ օձի կերպարանք ունենալը: Օձակերպ լինելը, որ հաճախ է փրկում լորտուի կյանքը, հաճախ էլ նրա կործանման պատճառն է դառնում: Եվ այն էլ ո՜ւմ ձեռքով: Թերևս ամենից հաճախ այն արարածի, որը կոչված է խելացի կերպով կարգավորելու բնության վայրի բնակիչների կյանքը...


Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 06209: Պատվեր 1310: Տպաքանակ՝ 76270: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 11 I 1972 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:



На раскопках крепости Эребуни (782 г. до н. э.)

375200

АВИА




Куда Երևան 200
Մարքսի բանակի 15

Кому «Պիոներ» ամսագրի
խմբագրություն

Индекс и адрес отправителя 375009
Երևան 9, Աշերյան 65
Հարությունյան Աշոտ

ՍԻՐԵԼԻ՛ ՊԻՈՆԵՐ-ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐ: Նամակների առաքումը արագացնելու նպատակով ՍՍՀՄ կապի մինիստրությունը մշակել է հասցեագրման նոր սիստեմ: Նամակների տեսակավորումը այսուհետև պետք է կատարեն ավտոմատները, որոնց արտադրողականությունը ժամում անցնում է 20 հազար նամակից:

Բոլոր քաղաքներին, շրջանային կենտրոններին և գյուղերին տրվել են պայմանական թվեր՝ ինդեքսներ: Այսպես, օրինակ, Երևան քաղաքի փոստային ինդեքսը 375000 է: № 1 կապի բաժանմունքի ինդեքսը կլինի 375001, իսկ № 39 կապի բաժանմունքինը՝ 375039 և այլն:

Այդ նպատակով կապի մինիստրությունը թողարկում է հատուկ ծրարներ և փոստային բացիկներ, որոնք ներքևի ձախ անկյունում ունեն վեց ցանցավոր ուղղանկյուններ, իսկ ծրարի հակառակ երեսին գրված են 0-ից մինչև 9-ը ոճավորված թվերի նմուշները: Նամակն ուղարկողը, սովորական հասցեից բացի, պետք է ուղղանկյունների մեջ ոճավորված թվերով գրի նամակը ստացողի փոստային ինդեքսը: Փոստային ինդեքսները գրելու ժամանակ պետք է լինել շատ ուշադիր, քանի որ ջնջումներով կամ աղավաղումներով գրված ինդեքսները ավտոմատների կողմից չեն տեսակավորվում:

Ձեզ սպասարկող կապի բաժանմունքի փոստային ինդեքսը գրում եք հետադարձ հասցեից առաջ սովորական թվանշաններով: Ինդեքսները կարելի է գրել ցանկացած գույնի թանաքով, բացառությամբ դեղին և կանաչ գույների: Այլ տեսակի փոստային առաքումների՝ ծանրոցների, փաթեթների, դրամական փոխադրությունների վրա փոստային ինդեքսը գրվում է սովորական թվանշաններով՝ հասցեից առաջ:

Ս. ԱՅՈՒՆՑ

Կենտրոնական փոստատուն, ազգաբնակչության մեջ կապի աշխատանքներ տանող խմբի պետ

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ 10 Կ.